# ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ

# ՏՕՆԱՑՈՅՑԸ

ՏՕՆԱՑՈՅՑԻ ՈՒ ՏՕՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

ԿԱՐԵՒՈՐ ԵՒ ՊԱՐԶ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

ԳՐԵՑ

ԲԱԲԳԷՆ Ծ. ՎԱՐԴ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1901

## ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ

# ՏՕՆԱՑՈՅՑԸ



ՏՕՆԱՑՈՅՑԻ ՈՒ ՏՕՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

ԿԱՐԵՒՈՐ ԵՒ ՊԱՐԶ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ





ԳՐԵՑ

ԲԱԲԳԷՆ Ծ. ՎԱՐԴ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1901

# ՏՕՆԱՑՈՅՑ

Յատուկ կարգադրութեան մը համեմատ տօներուն կարգն ու սարքը ցոյց տուող գիրք մըն է Տօնացոյց, որ հետզհետէ զարգացած ու կարգադրուած է։

Մեր Եկեղեցւոյ Տօնացոյցն իր ամենէն վերջին կարգադրութիւնը առաւ Սիմէոն Կաթողիկոսի (1765–1780) ձեռաց մէջ։ Այս Տօնացոյցը մեծ հակառակութիւն տեսաւ Կ. Պոլսի մէջ Զաքարիա Պատրիարքի (1) (1719–1799) ատեն եւ այս առթիւ «ԺԱՄԱԳԻՐՔ ԱՏԵՆԻ»ն «Վերստին տպեցեալ եղեւ ի Կոստանդնուպօլիս քաղաքի բնակեցեալ բոլոր ազգիս կամեցողութեամբն եւ հրամանաւ նորին ազգասէր Պատրիարքի Տեառն Զաքարիա Աստուածաբան կոչեցելոյ գերիմաստ Վարդապետի եւ Արքեպիսկոպոսի, ի փառս մանկացելոյն Յիսուսի» եւայլն, «ի Տպարանի Յօհաննիսի եւ Պօղոսի»։

Ժամագիրքս էջ մը Յառաջաբան ունի. «ի Կոստանդնուպօլիս մեծ բնակեցեալ ազգիս հայոց, Ամենասուրբ Երրորդութեան շնորհիւ, հաւաքեալ ի Պատրիարքանիս Սուրբ Աստուածածնի Մայր Եկեղեցւոջ» խօսքերով սկսուած, որ հին Տօնացոյցի գործածութիւնը կը պաշտպանէ Սիմէոնեանին դէմ՝ առանց յիշատակելու Սիմէոն Կաթողիկոսի անունը. եւ Ատենի ժամագիրքին այդ նոր տպա-

(1) Կաղզուանցի Զաքարիա Պատրիարք, որուն շիրիմը կը գտնուի Կ. Պոլիս, Գուրու-Չէշմէի Ս. Երեւման խաչ (Վոսփորի եւրոպական ափունքը) եկեղեցւոյ բակին մէջ։

գրութեամբ հին Տօնացոյցը — որ ժամագիրքին երկրորդ հատորը կը կազմէ — կը շատնայ ու կը գրուի բոլոր եկեղեցիներուն մէջ :

Աւելորդ է ըսել թէ Սիմէոնեան Տօնացոյցը՝ վերջապէս ընդունուեցաւ Պատրիարք Կաթողիկոս զիրար հասկընալէ յետոյ եւ ցարդ կը գործածուի անփոփոխ :

*Տօնացոյցը* միմիայն տօնացոյց չէ՛ . այլ՝ Տօնացոյցին մէջ միմիայն տօներն ու անոնց կարգը ցուցուած չեն . հո՛ն ցուցուած են նաեւ Եկեղեցւոյ իւրաքանչիւր օրուան Տարականները , Աւետարանները , Ընթերցուածները եւայլն եւայլն : Այնպէս որ ձեռագիր Տօնացոյցներ աւելի ընդարձակ խորագիր ունին : Իմ ձեռագիր մէկ Տօնացոյցը սա խորագիրը կը կրէ . «Տօնացոյց եւ Աւետարանացոյց եւ Հարցնացոյց եւ կարգաւորութիւնք եւ հրահանգ (ք) տէրունական տաւնից , զոր կարգեալ եւ սահմանեալ է Սրբոյն Սահակայ Հայոց Հայրապետի եւ ընկալեալ ի նմանէ նախնիքն մեր եւ հասուցին առ մեզ» :

Մեր Տօնացոյցը, որ այժմ կը գործածենք , երկու մասի բաժնուա՛ծ է եւ կը հրատարակուի թէ՛ առանձին գիրքով եւ թէ՛ Ատենի ժամագիրքին վերջը :

Տօնացոյցի Առաջին մասը կամ հատորը կը պարունակէ Տօներուն կարգը եւ Աստուածայայտնութեան օրէն սկսելով՝ իւրաքանչիւր Տէրունի , լուր եւ պահոց օրերու ժամերգութեան կարգաւորութիւնը :

Իսկ երկրորդ մասը կամ հատորը , որ ***ընդարձակ պարզատումար*** է եւ երեսուն վեց տարեգիրներու վրայ 36 հատուածներու բաժնուած է , կը պարունակէ բոլոր շարժական տօներու կարգադրութիւնն ու ժամերգութեան կարգաւորութիւնը: Այս հատորին իւրաքանչիւր հատուածը տարուան մը համար է , մինչ առաջին հատորը ամէն տարուան համար կը գործածուի :

Երկրորդ հատորը համառօտ ցանկի մը վերածուելով դրուած է Տօնացոյցին ամենէն վերջը՝ 532 տարիներու մշտնջենաւոր շրջանը ներկայացնող աղիւսակէն անմիջապէս ետքը :

Տօնացոյցի երկու հատորներուն մէջ ալ տեղ տեղ ծանօթութիւններ տրուած են, որ իրարու կը դրկեն Տօնացոյց գործածողը :

Տօնացոյցի տարեկան գործածութիւնը դիւրացնելու համար մտածուած է *Օրացոյցի* պատրաստութիւնը :

Օրացոյցը կը բաղկանայ Տօնացոյցէ, Հարցնացոյցէ կամ Տարեկանացոյցէ եւ բուն Օրացոյցէ :

Գալով մեր այս *Ժողովուրդի Տօնացոյցին*, ինչպէս խորագրէն իսկ կը գուշակուի, Տօնացոյցը պարզելու, լաւ եւս, Տօնացոյցին ամենէն գլխաւոր կէտերը ժողովրդականացնելու մտքով պատրաստուած է : Այս նպատակի դիմուած ատեն անօգուտ չհամարեցինք համառօտակի բացատրութիւններ ալ տալ Տօներու, Տօնական մեծ օրերու, պահքի, ուտիքի եւայլն, մասին :

Ասի մեծ գործ մը չէ՛, պարզ գործ մըն է : Ինչ ինչ մասերը՝ իբր Յաւելուած գրուած էր երկու տարի յառաջ՝ Ընդարձակ Օրացոյցի համար : Բայց շա՛տ ընդարձակ եկաւ ա՛յդ նպատակին ծառայելու : Հետեւաբար յարմար դատուեցաւ օգտակար գիտելիքներով ճոխացնելէ յետոյ առանձինն հրատարակել :

*1899 Յունիս 17* — ԲԱԲԳԷՆ ՎԱՐԴ.

# ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՏՕՆԱՑՈՅՑԸ



## ՏՕՆԵՐ

### Ա.

*Տօն ըսելով կը հասկնանք ա՛յն հոգեւոր հանդէսները, որոնցմով Եկեղեցին կը փառաւորէ Յիսուս Քրիստոսի և իւր նշանաւոր դէմքերուն յիշատակը և իւր հռչակաւոր դէպքերը ։*

*Տօները երկու որոշ բաժանում ունին Եկեղեցւոյ մէջ ։ Առաջին բաժանումը կ'ըսուի* **Տէրունի** *(տօներ), երկրորդը՝* **Մարտիրոսաց** *(տօներ) ։*

*Տէրունիները (Փարպեցիի բացատրութեամբ՝ «Տօնք Փրկչին») ի սկզբան՝ միայն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի տնօրինական յիշատակներուն յատկացուած էին, բայց յետոյ Տէրունիներու կարգ մտան ա՛յն տօներն ալ, որոնց յիշատակը ուղղակի կապուած էր Տեառն մերոյ Քրիստոսի հետ . զոր օր. Խաչի, Եկեղեցւոյ, Աստուածածնի տօները ։*

*Մարտիրոսաց տօները (Փարպեցիի բացատրութեամբ «Ժողովմունք յիշատակաց սրբոց» կամ պարզապէս «Ժո-*

ղովք Մարտիրոսաց») յատկացուած են Սրբոց յիշատակները տօնելու։ — «Ժողովք Մարտիրոսաց» կոչումը նշանակելի է․ որովհետեւ սրբոց տօները ծագումով տեղական են․ այսինքն՝ իւրաքանչիւր Սուրբին տօնը կամ յիշատակը իրենց գերեզմանին վրայ շինուած վկայարաններու մէջ կը կատարուէր։ — Ասկից ծագում առած է ուխտի երթալու սովորութիւնը։

Եկեղեցւոյ համար Տէրունի տօներ բոլորովին Կիրակի են․ այսինքն՝ այդ օրերը Սուրբ են, օր արգոյ (= գործի օր) չեն։

Մարտիրոսաց տօները բոլորովին կիրակի չեն։ Ասոնց շատ քիչ մասը Կիրակի եղած է։

Այն օրեր, որ կիրակի չեն, եկեղեցական բացատրութեամբ կ'ըսուին ղուր օր։

Եկեղեցւոյ մէջ շատ դիւրին է ճանչնալ այս օրերը, որք կիրակի են Տէրունի տօներու կամ յիշատակներու պատճառաւ։ Այդպիսի օրեր իրիկուն առտու «Խնդրեցուք հաւատով» կ'ըսուի(1), Աւետարան կը բարձրացուի, «Կեցո՛ Տէր։ — Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛» կ'ըսուի հանդիսաւորապէս։ — Մարտիրոսաց յիշատակին սուրբ պահուած օրեր «Կեցո՛» չըսուիր։

Տէրունի տօներու նպատակն է Տեառն մերոյ Քրիստոսի կեանքն ու յիշատակները կենդանի պահել հաւատացեալներու սրտին մէջ, և անոր սիրով վառել Եկեղեցւոյ լրութիւնը։

---

(1) Ըստ պատշաճի «Խնդրեցուք»ը կը փոխուի, բայց «Կեցո Տէր»ը անփոփոխ է։

Մարտիրոսաց տօներու նպատակն է յանուանէ փառաւորել և յաւէրժացնել տօնելի և յիշատակելի անձնաւորութիւններու Եկեղեցւոյ համար ըրած ծառայութիւնները ։ Եկեղեցին յարմար դատած է Մարտիրոսաց կենդանի օրինակներով ալ կրօնական զգացումը, հոգեւոր կեանքը ցուցնել և զգացնել հաւատացեալներուն ։

## Բ.

Տօները տարեկան յիշատակներ կամ տարեդարձներ են ։

Դիտելու է, սակայն, որ այդ տարեդարձները պատմական և ժամանակագրական ճշդութեամբ կարելի չէ՛ կատարել ։ Այսինքն է՝ այս ինչ տարւոյն այս ինչ ամսուն այս ինչ օրը հաստատուած տօն մը, երբեք կարելի չէ՛ եղած կատարել ուրիշ տարուան նոյն ամսուն նոյն օրը ։

Այս ժամանակագրական խոտորումի առաջին և հիմնական պատճառն է արեւու և լուսնի իրենց շրջանին մէջ յառաջ բերած տարբերութիւնը, որ դարերու ընթացքին մէջ տասնեակ օրերու թիւ մը կրնայ արտադրել ։ — Ծանօթ է Արեւմուտքի և Արեւելքի գործածած տոմարներուն 12 օրուան մե՛ծ տարբերութիւնը ։

Երկրորդ պատճառ մ'ալ այն է որ, Եկեղեցին սկիզբէն ի վեր ընդունած է կարգ մը տօներ կիրակի օրերու մէջ տօնել, առանց նայելու այդ տօներու հաստատութեան բուն օրերուն, զոր օր. Վարդավառի, Աստուածածնի, Խաչի տօներ ։

Տօները ճշդիւ իրենց հաստատութեան ժամանակին տօնելու դժուարութիւնը, որ սկիզբէն շատ զբաղեցուց

նախնիքը, միանգամ ընդ միշտ հարթուած է **Տոմարի** և **Տօնացոյցի** կարգադրութեամբ ։

Տօմարի և Տօնացոյցի հաշիւներով և կարգադրութեամբ տօները տեղաւորուած են տարուան օրերուն մէջ, առանց նայելու պատմական և ժամանակագրական ճշդութեան ։

Տէրունի տօներու տարեդարձի համար հիմ բռնուած են Եկեղեցւոյ սկիզբէն ի վեր ընդունուած աւանդական հաշիւները ։

Մարտիրոսաց Տօները զետեղելու համար կարելի չէ՛ եղած գէթ Տէրունիներու չափ ճշդութիւն պահել . այլ՝ ինչ որ նախնիք աւանդաբար կարգադրած են, ատոր միայն կարելի եղած ուշադրութիւնը նուիրուած է ։

Գ.

Ինչպէս որ ըսինք, թէև տօներ պատմական և ժամանակագրական ճշդութեամբ չեն տարեդարձուիր, բայց Տոմարի և Տօնացոյցի հաշիւներով, ատոնց մէկ մասին (այսինքն Տէրունիներուն) հաստատուն օրեր և ամսաթիւեր որոշուած են ։ — Ասոնք են **Անշարժ** ըսուած տօները ։ Միւս տօներ, որ այդ կերպով որոշուած հաստատուն օր և ամսաթիւ չունին, կ՚ըսուին **Շարժական** կամ **Շարժուն** տօներ ։

Շարժական տօներ Զատկի կապուած են . այսինքն՝ Զատիկը քանի օրերու մէջ ետ և յառաջ որ շարժի կամ տեղափոխուի, շարժական տօներն ալ Զատկէն յառաջ կամ յետոյ կը շարժին կամ կը տեղափոխուին ։

## Ահա անշարժ տօներու ցուցակը

1. Յունուար 5 Ճրագալոյց Ծննդեան և Աստուածա-յայտնութեան Քրիստոսի ։
2. Յունուար 6 Ծնունդ և Աստուածայայտնութիւն Քրիստոսի ։
3. Յունուար 7, 8, 9, 10, 11, 12 օրեր Ծննդեան և Աստուածայայտնութեան ։
4. Յունուար 13 Անուանակոչութիւն Քրիստոսի ։
5. Փետրուար 14 Տեառնընդառաջ (Տէրընտաս) ։
6. Ապրիլ 7 Աւետումն (Ս. Աստուածածնի)
7. Սեպտեմբեր 8 Ծնունդ Աստուածածնի ի յԱննայէ ։
8. Նոյեմբեր 21 Ընծայումն Ս. Աստուածածնի ի տա-ճարն ։
9. Դեկտեմբեր 9 Յղութիւն Ս. Աստուածածնի ի յԱննայէ։

Տեսակ մը անշարժ խումբ կարելի է համարել նաև Բուն Բարեկենդանէն, նոյն իսկ Առաջաւորքէն մինչև Վարդավառ գրաւող ժամանակամիջոցը, ո՛չ անոր համար որ այդ ժամանակամիջոցին պաքերը, Տէրունիներն ու Մարտիրոսացը որոշ օրերով և ամսաթիւերով հաստատուած են, ա՛յլ որովհետև այդ ժամանակամիջոցը երբեք չի փոխուիր տևողութեամբ ։

Մասնաւորապէս դիտելու է որ Բուն Բարեկենդանը կանխող երկու շաբաթներու նշանաւոր և ծանօթ տօները ճիշդ Տօնացոյցի մէջ նշանակուած որոշ օրերուն մէջ կը տօնուին, բնաւ չեն փոխուիր ։



## ՄԱՍՆԱՒՈՐ ԳԻՏԵԼԻՔ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ, ԽԱՉԻ ՏՕՆԵՐՈՒՆ ԵՒ ՅԻՍՆԱԿԱՑ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻ ՎՐԱՅ

*Այս երեք նշանաւոր օրեր թէ՛ անշարժ են և թէ՛ շարժական ։*

*Անշարժ են, որովհետեւ տօնուելու համար յատուկ օրեր ունին ։*

*Շարժական են, որովհետեւ այդ յատուկ օրեր ամէն տարի նոյն ճշդութեամբ չեն տարեդարձուիր ։*

*Զոր օր. Ս. Աստուածածնի Վերափոխումը անշարժ կերպով Օգոստոս 15ին պէտք է տօնուի. բայց որովհետեւ յատկապէս կիրակի պէտք է ըլլայ տօնի օրը, և Օգոստոս 15ը կարելի չէ որ ամէն տարի կիրակի հանդիպի, այս պատճառաւ Օգոստոս 15էն կամ երեք օր յառաջ կամ երեք օր յետոյ կը շարժի, այսինքն՝ Օգոստոս 12—18 եօթը օրերու միջոցին, և այս 7 օրերուն մէջ հանդիպող կիրակին կը տօնուի ։*

*Ս. Խաչի վերացման տօնի բուն օրն է Սեպտեմբերի 14ը. բայց որովհետեւ կիրակիին պէտք է տօնուի միեւնոյն կերպով Սեպտեմբեր 14 էն կամ երեք օր յառաջ կամ երեք օր յետոյ, այսինքն՝ Սեպտեմբեր 11—17, եօթը օրերուն մէջ հանդիպող կիրակիին կը տօնուի ։*

*Յիսնակաց բարեկենդանի օրն ալ Նոյեմբերի 18ը որոշուած է, որովհետեւ Նոյեմբեր 18էն մինչեւ Յունուար 6 ճիշդ յիսուն օր (Յիսնակ) է ։ Բայց որովհետեւ Յիսնակը շաբաթպահք ունի, որուն բարեկենդանը անպատճառ կիրակի պէտք է ըլլայ, դարձեալ Նոյեմբեր*

18էն կամ երեք օր յառաջ կամ երեք օր յետոյ, այսինքըն՝ նոյեմբեր 15—21, եօթը օրերուն մէջ հանդիպող կիրակին բարեկենդան կ'ըլլայ :

## Ե.

## ՇԱՐԺԱԿԱՆ ՏՕՆԵՐ

*Ըսինք թէ Շարժական տօներ Զատկի հետ կապուած են, կը հետեւի ուրեմն որ Զատիկն է որ կը շարժի կամ կը տեղափոխուի :*

*Զատիկը ծագումով հրէական տօն մըն է պասեք անունով : Հրեայք իրենց պասեքը կը տօնէին Նիսանի (Ապրիլ) 14ին Լուսնի լրման ժամանակ :*

*Եւ որովհետեւ Քրիստոսի Յարութիւնը ճիշդ այդ ամսուն, այսինքն՝ գարնանային գիշերահաւասարին (մարտ 21) յաջորդող կիրակիին պատահեցաւ, չփոթ մը յառաջ եկաւ այս երկու տօներու մերձաւորութենէն : Եւ խնդիր եղաւ թէ Զատիկը Ապրիլ (= Նիսան) 14—15ին տօնելու էր թէ կիրակի օրը :*

*Այս չփոթին առաջքը առաւ Նիկիոյ Տիեզերական Ս. Ժողովը (325) և սահմանեց որ քրիստոնէական եկեղեցին Զատիկը պէտք է կատարէ գարնանային գիշերահաւասարի (= Մարտ 21), այսինքն՝ Մարտ ամսու լուսնի լրումէն անմիջապէս յետոյ եկող կիրակիին :*

*Եթէ Մարտ ամսու լուսնին լրումը Մարտի 21էն յառաջ պատահի, ա'յն ատեն Զատիկը պէտք է տօնել Ապրիլ ամսու լուսնի լրումէն անմիջապէս յետոյ եկող կիրակին :*

Իսկ թէ՛ Մարտ ամսու և թէ՛ Ապրիլ ամսու լուսիններուն լրումը պատահի կամ ուրբաթ , կամ շաբաթ և կիրակի օրերուն , Զատիկը պէտք է տօնել ճիշդ հետեւեալ կիրակին ։

Այդ կանոնէն կը հետեւի ուրեմն թէ Զատիկը անպատճառ կիրակի օր մը պէտք է տօնուի , և թէ այդ կիրակին պէտք է ըլլայ Մարտի կամ Ապրիլի լուսիններու լրումին անմիջապէս յաջորդող կիրակիներէն մէկը ։

Արդ՝ Մարտի լուսինը կը ծնի Մարտ 8ին , և կը լրանայ Մարտ 21ին ։ — Այս լրումը կը կոչուի **«Աւագ լրումն լուսնի»** ։

Իսկ Ապրիլի լուսինը կը ծնի Ապրիլ 5ին , և կը լրանայ Ապրիլ 18ին , որուն անմիջապէս յաջորդող կիրակին Ապրիլ 25ը չկրնար անցնիլ ։

Ուրեմն Զատիկը կը տօնուի Մարտ 22էն մինչեւ Ապրիլ 25 . **երեսուն հինգ** օրերու մէջ հանդիպող կիրակիներէն մէկուն (1) ։

Ուրիշ խօսքով՝ Զատիկը 35 օրերու մէջ կը **շարժի** , և իրեն հետ կը շարժին ա՛յն տօներն ալ , որոնք **շարժական** կ'ըսուին ։

Ահա **շարժական** տօներու ցուցակը ։

1. Ծնունդի և Աստուածայայտնութեան յաջորդող **Ապայից տօները** , թուով 11 հատ ։

**Ծանօթ.** — Այս տօները ԱՊԱՑԻՑ ըսուած են , որովհետեւ Տօնացոյցին մէջ Ծննդեան Ութօրէքէն անմիջա-

(1) Զատիկը և ուրիշ նշանաւոր տօներուն օրը գտնելու համար Տե՛ս **«Տարեգրով Զատիկը գտնել»** և **«Տարեգրով տօներ գտնել»** գրքերը ։

պէս ետքը՝ «ՆԱԽ» Յովհաննու Կարապետին ծնունդը կը տօնուի և «ԱՊԱ» (= ետքը) կ՚սկսին կարգ մը սուրբերու տօներ. զոր օր. «Ապա սրբոցն Պետրոսի հայրապետի» ելն.։

2. Վարդավառէն մինչև Աստուածածին (Վերափոխում) երկարող չաբաթներու տօները ։

3. Եթէ Աստուածածնէն Խաչ եղած երեք չաբաթները երկարին և Դրդ. և Երդ. չաբաթներ ալ պէտք ըլլան, այս վերջին երկու չաբաթներու տօները ։

Շարժական տօներու օրն ու տեղը Տօնացոյցի երկրորդ հատորն է որ կը նշանակէ ։

# Զ.

Տօները, ըլլայ Տէրունի, ըլլայ Մարտիրոսաց, սկզբամբ ուրախութեան օրեր են Եկեղեցիի համար և ընդհանրապէս կը տօնուին ուտիք օրերը ։

Բայց կան տօներ, որ պահոց օրերու մէջ ալ կը տօնուին ։

Ահա՛ այդ տօներու ցուցակը.

1. Ս. Բարսեղ Հայրապետի և ասոր հետ կապուած Սուրբերու տօնը՝ որ կը տօնուի Ծննդեան պահոց չաբաթ օրը ։

2. Յովնան Մարգարէի և Նինուէացւոց յիշատակը, Առաջաւորաց ուրբաթ օրը ։

3. Մեծ Պահոց բոլոր չաբաթները Սրբոց նուիրուած են ։

Ա. Շբ. տօն է Սրբոյն Թէոդորոսի Զօրավարին ։

Բ. Շբ. տօն է Սրբոյն Կիւրղի Երուսաղեմայ Հայրապետին և միւս Կիւրղի Եպիսկոպոսին և մօրն նորա Աննայի ։

Գ. Շբ. տօն է Սրբոյն Յովհաննու Երուսաղեմայ Հայրապետին և Սրբոց Հայրապետացն մերոց Յովհաննու Օձնեցւոյն, Յովհաննու Որոտնեցւոյն և Գրիգորի Տաթեւացւոյն ։

Դ. Շբ. տօն է Սրբոց Մանկանց Քառասնից, որք ի Սեբաստիա կատարեցան ։

Ե. Շբ. տօն է Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ ստկալին Զարչարանացն և Մտին ի Վիրապն ։

Զ. Շբ. Յիշատակ է Ղազարու Յարութեան ։

4. Ամբողջ Աւագ շաբաթը Տնօրինական յիշատակներու նուիրուած է (Աւագ Հինգշաբթի կիրակի է) ։

5. Ս. Հոգւոյն գալստեան յիշատակին նուիրուած է Եղիական պահոց օրերն, ըստ կարգադրութեան Շնորհալի Հայրապետին ։

6. Սրբոց տօներ կը կատարուին Լուսաւորչի պահոց ԲՇ. ԳՇ. և ԵՇ. օրերը ։

7. Սրբոց տօներ կը կատարուին Վարագայ Խաչի պահոց ԲՇ. ԳՇ. ԵՇ. և ՇԲ. օրերը ։

8. Սրբոց տօներ կը կատարուին Ս. Յակոբի պահոց օրերը ։

## ՊԱՀՔ

Եկեղեցին միշտ չտօնէր ։ Ապաշխարութեան յատկացեալ օրեր ալ ունի, որք տարուան կէսին կը հաւասարին ։

Եկեղեցին՝ ապաշխարութեան օրերուն մէջ տօնի օրերու յատուկ ժամերգութենէն բոլորովին տարբեր

ժամերգութիւն կ'ընէ ։ Այդպիսի օրերու ընթերցուածներն , երգերն ու շարականները զղջում կը ներշնչեն և եկեղեցին ամենէն վսեմ զգացողի մը հոգեկան ցաւերը կ'արտայայտէ ։

Եւ որպէս զի ապաշխարութեան օրերը զգալի ըլլան հաւատացեալներու վրայ ալ՝ եկեղեցին պահք (տեսակ մը զրկանք) սահմանած է . այսինքն՝ հաւատացեալները այս ինչ բաները միայն պիտի ուտեն այդ օրերուն մէջ ։

Պահքը՝ ուտելիքի տեսակէտով երկու խումբի կը վերածուի . Առաջինն բուն պահքի օրեր , յորում ներելի չէ ուտել մսեղէն , հաւեղէն , ձկնեղէն , կթեղէն (բաց ի մեղրէն) և ինչ որ ուտելի կենդանիներէն կը հայթայթուի իբր սնունդ ։

Երկրորդ . Նաւակատիք ըսուած օրերը , յորս ներելի է ուտել կթեղէն , ձկնեղէն բաներ ։

Նաւակատիքի օրերը շատ քիչ են , այսինքն՝ հինգ տաղաւարներու շաբաթապահոց շաբաթ օրերը ։

Պահքերն ժամանակի տեւողութեան տեսակէտով դարձեալ երեք խումբի կը վերածուին ։ Ա. շաբթուան երկու օր պահքերը (Դշ. և Ուր.) որոնց կրնանք օրապահք ըսել ։

Երրորդ . Մեծպահքը ։

Օրապահքերը ամենէն հին և ամենէն որոշ պահքի օրերն են։ Հրեայք (Փարիսեցի) ալ կը պահէին (ծոմ) «երկիցս ի շաբաթու» (Ղուկ. ԺԸ. 12) այսինքն՝ շաբթու մէջ երկու օր և այդ օրերն էին Բշ. և Եշ. ։

Շատ կանուխ ժամանակէն քրիստոնեայք Դշ. և

Ուր.ի փոխեցին զայն (Կանոնագիրք վարդ. Առաքելոց Գ. և Դ.)։ Դչ.ին «զի ի նմա գուշակեաց և յայտնեաց Տէրն կենարար զխորհուրդ չարչարանաց իւրոց» եւայլն. և Ուր.ն «վասն զի զոր. ինչ ասացաւն յաւուր չորեքշաբթւոջն վասն չարչարանաց մերոց՝ յուրբաթուն կատարեցաւ»։

Շաբաթապահքերը, ծագումով չորս հատ էին. իւրաքանչիւր եղանակի առաջին շաբաթը պահք էր։

Այս եղանակի շաբաթապահքերը դեռ կան։

Գարնանը (Մարտ ամիս) Մեծպահոց մէջ կ'իյնայ։

Ամռանը (Յունիս ամիս) Ս. Լուսաւորչի շաբաթապահքն է (1)։

Աշնանը (Սեպտ. ամիս) Վարագայ Խաչի շաբաթապահքն է։

Ձմռանը (Դեկտ. ամիս) Ս. Յակոբի Շաբաթապահքն է։

Բայց հետզհետէ նշանաւոր տօներու հոգեւորապէս պատրաստուելու սկզբունքով շատցան շաբաթապահքերը (Ներսէս Բ.ի ատեն)։ Այժմ մեր եկեղեցին ունի ինը շաբաթապահք, 1. Ծննդեան, 2. Առաջաւորաց, 3. Եղիական, 4. Լուսաւորչի, 5. Վարդավառի, 6. Խաչվերացի, 7. Վարագայ Խաչի, 8. Յիսնակաց, 9. Ս. Յակոբայ։

Մեծպահքն ալ ծագումով մէկ և երկու օր եղած է. յետոյ աւելցած է 7 շաբաթներու շարքը։ Քանի որ Քրիստոսի քառասնօրեայ ծոմապահութեան հետեւութիւն մըն է Մեծպահքը՝ շատ կանուխ ժամանակէն (Դրդ. դար) 40 օրի լրացուած կը գտնենք։ Թէեւ այժմ

(1) Ստեփաննոս Գոյներերիցանց յայտնապէս կը յիշատակէ աև Բուն Բարեկենդան ամսուն աղուհացից» ինչպէս որ պիտի տեսնենք։

*ալ Քրիստոսի քառասնօրեայ ծոմապահութեան յիշատակը հաստատուն կը բռնենք՝ բայց իրապէս 47 օր կը պահենք և 48րդ. օրն ալ (Ճրագալոյց Զատկի) Նաւակատիք կ'ընենք ,*

*Այս մասին դարձեալ պիտի խօսինք ։*

## ՈՒՏԻՔ

### Ա.

*Զատկի Մարտ 22էն մինչև Ապրիլ 25 , երեսուն հինգ օրերու մէջ , շարժման համեմատ կ'երկարին կամ կը կարճնան ա'յն ժամանակամիջոցներ , որք ուտիքի յատկացուած են և կ'ըսուին «Միջոց ուտիք աւուրք» ։ — Պարզատոմարի աղիւսակին ( որ Տօնացոյցներու ամենէն վերջը կը դրուի) վրայ ուշադիր նայուածք մը բաւական է , տեսնելու համար թէ ,*

*Ա. Աստուածայայտնութենէն մինչև Առաջաւորաց Բարեկենդանը , ամենէն կարճը 6 օր կ'ըլլայ , ամենէն երկարը 41 օր ։*

*Բ. Վարդավառէն մինչև Աստուածածին , ամենէն կարճը 2 շաբաթ կ'ըլլայ և ամենէն երկարը 7 շաբաթ որոնցմէ մին շաբաթապահք է ։*

*Գ. Աստուածածինէն մինչև Ս. Խաչ , կ'ըլլայ 4 կամ 5 շաբաթ , որոնցմէ մին շաբաթապահք է ։*

*Դ. Վարագայ Խաչէն (կամ Ս. Գէորգայ Բարեկենդանէն) մինչև Յիսնակաց Բարեկենդանը կ'ըլլայ 7 կամ 8 շաբաթ ։*

*Ե. Ս. Յակոբի Բարեկենդանէն մինչև Աստուածայայտնութեան պահքը ամենէն կարճը 12 օր կ'ըլլայ, իսկ ամենէն երկարը 18 օր ։*

Բ.

Հաստատապէս ուտիք են նաև սա միջոցները .

Ա. Առաջաւորաց կամ Ս. Սարգսի յաջորդող 2 շաբաթները ։

Բ. Ցինունքը . այսինքն՝ Զատկէն մինչև Հոգեգալուստ եղած յիսուն օրուան միջոցը ։

Գ. Հոգեգալուստին կամ Եղիական պահոց յաջորդող 2 շաբաթները ։

Դ. Ս. Լուսաւորչի (Գիւտ նշխարաց) տօնին յաջորդող 2 շաբաթները ։

Ե. Ս. Խաչի (Վերացման) տօնին յաջորդող 1 շաբաթը ։

Զ. Ցիսնակի պահոց յաջորդող 2 շաբաթները , մինչև Ս. Յակոբ ։

Այս բոլոր շարժական և անշարժ միջոցները , ըլլայ պահք , ըլլայ ուտիք , երբ նկատի առնենք , կը տեսնենք որ տարուան կէսը պահք է և կէսը ուտիք ։ Անշուշտ դիտելու է որ միշտ 365 կամ 366 օրերու ճիշդ կէսը կարելի չէ՛ իմանալ . որովհետև կրնայ կէսէն աւելի կամ պակաս ըլլալ, Զատկի շարժման երեսուն հինգ օրերու վրայ ։

## ՈՒԹԸ ՁԱՅՆԵՐ

Հայ. Եկեղեցւոյ ժամասացութիւնն ու երգեցողութիւնը յատուկ կարգադրութեան մը համաձայն կը կատարուին ։

Այս կարգադրութեան հիմն է փոխի ձեւով կամ

դաս առ դաս կարդալ ամէն տեսակ ընթերցուածները , և երգել Սաղմոսներն ու Շարականները ։

Բայց թէ եկեղեցւոյ մէջ ո՛վ կամ որո՛նք ինչ պիտի կարդան և ի՛նչպէս պիտի երգեն , այս ամենը վաղ ժամանակէն , որոշուած և կարգադրուած է Ութը Ձայներու վրայ ։

Ութը Ձայներ սապէս համառօտուած են ։

| | |
|---|---|
| 1. ԱՁ = Առաջին Ձայն | 5. ԳՁ = Երկրորդ Ձայն |
| 2. ԱԿ = Առաջին Կողմ | 6. ԳԿ = Վառ Ձայն |
| 3. ԲՁ = Երկրորդ Ձայն | 7. ԴՁ = Չորրորդ Ձայն |
| 4. ԲԿ = Աւագ կողմ | 8. ԴԿ = Վերջ Ձայն |

Ինչպէս կը տեսնուի ա՛յս պատկերին մէջ , Ութը Ձայներուն 4ը Ձայն է , 4ն ալ Կողմ ։ Չորս Ձայները **Բուն Ձայներ** կ՛ըսուին ։

Ութը Ձայներ մեր եկեղեցական երաժշտութեան բուն բանալիններն են ։ Եկեղեցական բոլոր երաժըշտութիւնը Ութը Ձայներու կամ խումբերու վերածուած է , և իւրաքանչիւր Ձայն և Կողմ այդ խումբերէն կտոր մը երգելու համար որոշ եղանակ մը կը յիշեցնէ ։ Այսպէս՝ Երբ ԱՁ ըսենք՝ կը հասկնանք խումբ մը շարականներ ու յատուկ եղանակ մը իրենց բոլոր դարձուածներով կամ ստորաբաժանումներով . եայլն ։

Ութը Ձայներու վրայ բաշխուած է եկեղեցւոյ ժամասացական կարգն ալ ։ Եւ այսօր ա՛յդ բաշխումի համեմատ կը կարդացուին Սաղմոսներ , պահոց մաղթանքներ , Աւետարաններ , Քարոզներ , Աղօթքներ իրենց մաղթանքներով ։ Զոր օր. Եկեղեցին ամեն օր միեւնոյն Աւետարանիչէն չկարդար . այլ՝ Ութը Ձայներու համեմատ , ինչ որ նշանակուած է՝ զայն կը կարդայ ։ Այսպէս

*հասկնալու է միւս կարդացուելիքներու և երգուելիքներու համար ալ ։*

*Սա պատկերով կը ներկայացնենք ութը ձայներու կարգաւորութիւնը .*

| Ձայնք (Զոյգ) | Սաղմոսք (Զոյգ կանոնք) | Մաղթանք Ճաշոց | Աւետարանք | Քարոզք | Աղօթք | Մաղթանք Ձէնի աղօթից |
|---|---|---|---|---|---|---|
| ԴԿ<br>ԲԿ | — Երանեալ<br>— Իբրեւ | — Քրիստոս է խմ.<br>— Խաղաղ. | Մատթ. | Վասն ի վերուստ | Տէր Տուընչեան | Սաղմոսուք |
| ԱՁ<br>ԳՁ | — Երկինք<br>— Տէր ապա. | — Տուք փառս.<br>— Ցոյս կենդ. | Մարկ. | Վասն ի գիշերի | Ի գիշերի և ի տուընչեն | Ի գիշերի և ի տուընչեն |
| ԱԿ<br>ԳԿ | — Մի՛ նախ.<br>— Խոստովան. | — Դու ես Տէր.<br>— Եկեսցեն. | Ղուկ | Վասն ուղղելոյ | Տէր Երկնի | Ցերգս օրհնութեան |
| ԲՁ<br>ԴՁ | — Ողորմեա՛<br>— Ի նեղութ. | — Բարձրացաւ.<br>— Լուր մեզ , Տէր . | Յովհ. | Վասն զտանելոյ | Գոհանամք | Գոհութեամբ |

Ո՛չ միայն կարդացուելիք նիւթերը ութը Ձայնե-րով որոշուած են այդպէս, այլ նաև եկեղեցիի մէջ ո՛ր դասը պիտի սկսի կամ պիտի կարդայ ա՛յս ինչ աղօթքը կամ շարականը, եւայլն, ութը Ձայներով որոշուած են ։

Ձայներու կարգաւորութիւնը կ՚սկսի Բուն Բարկենդանէն. այդ օր Ձայնը ինչ ալ ըլլայ, պէտք է (ԴԿ) ի փոխել, որպէսզի Մեծպահոց առաջին օրը ԱՁով սկսի եւ Զատկին ալ Ձայնը ԱՁ ըլլայ. — Այսպէս կը շարու-նակուի եւ ամեն Բուն Բարկենդանին՝ դարձեալ ԴԿ (= վերջ Ձայնի) կը փոխուի ։

Գիտենք որ եկեղեցին երկու դաս ունի ։ Առաջինը կ՚ըսուի Աջակողմեան դաս (Եկեղեցիին հիւսիսային կողմը, ուր Աւագան կայ,) եւ այդ դասի գլուխն է որ կը կանգնի Եկեղեցւոյն Առաջնորդը ։

Երկրորդը կ՚ըսուի՝ Ձախակողմեան դաս. եկեղեց-ւոյն հարաւային կողմը ։

Քանի որ ժամերգութիւնը դաս առ դաս կը կա-տարուի, բնական է որ եթէ մէկ տարի աջակողմեան դասը կը վարէ Ձայները եւ Ձախակողմեան դասը՝ Կող-մերը, յաջորդ տարին հակառակը կը պատահի ։

Արդ՝ եթէ Փրկչական Թուականը ԴՍՐ (= զոյգ = չիֆթ) է, այդ տարին Բուն Ձայները (ԱՁ, ԲՁ, ԳՁ, ԴՁ,) Աջակողմեան դասուն կ՚իյնան, իսկ եթէ ԿՈՃԱՏ (= անզոյգ = թեք) է Փրկչական Թուականը, Ձախա-կողմեան Դասուն կ՚իյնան Բուն Ձայները, եւ Աջա-կողմեանին կ՚իյնան Կողմերը (ԱԿ, ԲԿ, ԳԿ, ԴԿ,) ։

Ո՛ր դասը որ օրուան ձայնին համեմատ կարգ կը վարէ, կ՚ըսուի Աւագերիցու դաս, եւ միւսը կ՚ըսուի Աշակերտի դաս, եւ ամեն օր երկու դասերէն մէկը փո-խադարձաբար Աւագերիցու կամ Աշակերտի դաս կ՚ըլլայ ։

*Ուագերիցու դասէն քահանայն Աղօթքները կ'ըսէ, իսկ Աշակերտի դասէն Սարկաւագը՝ Քարոզները կ'ըսէ կամ կ'երգէ եւլն.։*

*Այսպէս ժամասացութեան և ժամերգութեան որոշեալ մի մասը Ուագերիցու դասը կը կատարէ, որոշեալ մի մասն ալ Աշակերտի դասը։*

*Այս կարգաւորութիւնը «Խրատք ժամատեղեաց ըստ Արեւելեան սահմանացն սկսուածոց և սաութեանց աղօթից» խորագրով կը դրուի Ժամագիրքի սկիզբը, ուր տեղ Ձայն վարող դասը կոչուած է Ձայնի դաս (= Ուագերիցու դաս) իսկ աշակերտինը Կողմանց դաս։*

*Այդ խրատը ամփոփ է. աւելի ընդարձակն ու ճըշդուածը կը դրուի Ս. Էջմիածնի Տպարէն ելլող Օրացոյցներու վերջը, որուն մէկ օրինակը կը կցենք այս գըրքին վերջը։*

## ՁԱՅՆ ԳԻՒՏ

*Տեսանք որ Մեծ Պահքի երկուշաբթին և Զատիկին Ձայնը միշտ ԱՁ է։*

*Արդ եթէ ուզէ ոք գիտնալ թէ այս ինչ օրուան Ձայնը ի՞նչ է, կամ Մեծ Պահոց ԲՇ էն և կամ Զատիկէն մինչև այդ փնտռուած օրը գումարելու է օրերու թիւը և յետոյ գումարը բաժնելու է 8 ով (= Ձայներու թիւը), եթէ մնացորդը 1 է, փնտռածդ ԱՁ է, եթէ 2, փընտըռածդ է ԱԿ, և այլն։ Իսկ եթէ մնացորդ չտայ՝ ԴԿ է։ Զոր օր. կ'ուզեմ գիտնալ թէ 1898ի Մայիս 14ին Ձայնը ի՞նչ էր։ Արդ՝ գիտենք թէ այդ տարին Զատիկը Ապրիլ 5ին էր։ Ապրիլ 5էն մինչև Մայիս 14 եղած օրերու գումարն է 40, զոր բաժնելով 8 ով՝ մնացորդ*

չոար․ փնտռուած Զայնն է ութեմն ԴԿ։ Դարձեալ, Սեպտեմբեր 13 ին ի՞նչ է Զայնը․ — Ապրիլ 5 (Զատիկ) էն մինչև Սեպտ. 13 օրերու գումարն է 162, զոր 8 ով բաժնելով 2 մնացորդ կուտայ, որ է ԱԿ։

Զայները գտնելու համար աղիւսակ մ'ալ կայ զոր շիներ է Հեթումի քարտուղարը։

| ԱՄԻՍՔ | ՏԱՌԵԳԻՐՔ | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Ա | Բ | Գ | Դ | Ե | Զ | Է | Ը |
| | Թ | Ժ | Ի | Լ | Խ | Ծ | Կ | Հ |
| | Ձ | Ղ | Ճ | Մ | Յ | Ն | Շ | Ո |
| | Չ | Պ | Ջ | Ռ | Ս | Վ | Տ | Ր |
| | Ց | Ւ | Փ | | | | | |
| Փետրվար . . . . . . | 7 | 6 | 5 | 4 | 3 | 2 | 1 | 8 |
| Մարտ . . . . . . . | 3 | 2 | 1 | 8 | 7 | 6 | 5 | 4 |
| Ապրիլ . . . . . | 2 | 1 | 8 | 7 | 6 | 5 | 4 | 3 |
| Մայիս . . . . . . . | 8 | 7 | 6 | 5 | 4 | 3 | 2 | 1 |
| Յունիս . . . . . . | 7 | 6 | 5 | 4 | 3 | 2 | 1 | 8 |
| Յուլիս . . . . . . . | 5 | 4 | 3 | 2 | 1 | 8 | 7 | 6 |
| Օգոստոս . . . . . . | 4 | 3 | 2 | 1 | 8 | 7 | 6 | 5 |
| Սեպտեմբեր . . . . . | 3 | 2 | 1 | 8 | 7 | 6 | 5 | 4 |
| Հոկտեմբեր . . . . . | 1 | 8 | 7 | 6 | 5 | 4 | 3 | 2 |
| Նոյեմբեր . . . . . . | 8 | 7 | 6 | 5 | 4 | 3 | 2 | 1 |
| Դեկտեմբեր . . . . | 6 | 5 | 4 | 3 | 2 | 1 | 8 | 7 |
| Յունվար . . . . . . | 5 | 4 | 3 | 2 | 1 | 8 | 7 | 6 |
| Փետրվար . . . . . . | 4 | 3 | 2 | 1 | 8 | 7 | 6 | 5 |

**Աղիւսակիս գործածութեան եղանակը.** — Տարեգրի Տուփը գտի՛ր, ա՛յդ ուղղութեամբ իջի՛ր մինչև այն ամսուն դիմացը գտնուող թիւին վրայ, որուն այս ինչ օրուան Ձայնը կ'ուզես գտնել. աւելցո՛ւր այդ թիւին վրայ փնտռուած օրուան ամսաթիւը և գումարը բաժնէ 8ով, մնացորդը եթէ 1 է՝ Ձայնն է ԱՁ, եթէ 2՝ Ձայնն է ԱԿ, և այլն։

Զոր օր. կ'ուզեմ գիտնալ թէ 1898ի Դեկտեմբեր 6ի Ձայնը ի՞նչ էր։ Այդ տարուան տարեգիրն է Կ։

Աղիւսակին մէջ կը գտնեմ Կ Տարեգիրին տուփը, և այդ ուղղութեամբ կ'իջնեմ մինչև Դեկտեմբերի դիմացը գտնուած թիւը, որ է 8. կ'աւելցնեմ 8ի վրայ Դեկտ. 6 ամսաթիւը, և կ'ունենամ 14. կը բաժնեմ 8ով և մնացորդ կուտայ 6, որ է ԳԿ։

Միայն դիտելու է որ աղիւսակիս մէջ Փետրվար ամիսը կրկնուած է. և թէ Յունվարը ցուցակին վերջը դրուած է Փետրվարէն յառաջ։ Ասոր պատճառը սա է. որովհետև Ձայնը՝ Բուն Բարեկենդանին ինչ ալ ըլլայ փոխուելով ԴԿ ի կը վերածուի. և ասկէ զատ Ձայնը փոխուած ատեն Տարին ու Տարեգիրն ալ միասին չեն փոխուիր, այլ արդէն փոխուած կ'ըլլան տարուան սկիզբէն, և որովհետև Ձայնգիւտը Տարեգրին կապուած է, աղիւսակիս շինուածքն ալ այս հաշուի վրայ եղած է. հետևաբար Ձայն Գիւտ ընելու ատեն մինչև բուն Բարեկենդան՝ հին, այսինքն՝ նախորդ տարուան Տարեգիրը գործածելու է, և Բուն Բարեկենդանէն յետոյ ա՛յն Տարեգիրը, որուն տարիին մէջ կը գտնուիս։

ՀԱՐՍԱՆԻՔԻ ՕՐԵՐ

Եկեղեցին ամեն օր պսակի (ամուսնութեան) խորհուրդը չկատարեր։

Պահքի բոլոր օրերուն (օրապահք, շաբաթապահք, Մեծպահք) հարսնիք չըլլար։

Տէրունի տօներու ընթացքին մէջ ալ չըլլար հարսնիք։ Մնացած հարսնիքի օրերն ալ սապէս կ'բաժնուին։

1. Առաջին շաբաթ(1) զկնի Հոգեգալստեան։ — Առաջին պահ կամ Առջի պահ ըսուածն է այս։

2. Հոգեգալստենէն մինչեւ Վարդավառ եղած շաբաթներ (1)։

3. Վարդավառի յաջորդող շաբաթներ (1) մինչեւ Աստուածածին։

4. Աստուածածնէն մինչեւ Խաչ յաջորդող շաբաթներ (1)։

5. Խաչի յաջորդող շաբաթներ (1) մինչեւ Յիսնակ։

6. Յիսնակաց Եօթը շաբաթները։

7. Ծննդեան ութօրէից յաջորդող շաբաթներ (1) մինչեւ Առաջաւորաց բարեկենդան։

8. Առաջաւորաց յաջորդող շաբաթներ (1) մինչեւ Բուն Բարեկենդան։

Այս միջոցները շարժական ըլլալուն կարելի չէ՛ հաստատապէս դնել հարսնիքի Շաբաթներու կամ Եօթնեակներու թիւը։ — Օրացոյցը կը նշանակէ կիրակիներն «ՀԱՐՍԱՆԻՔ» բառով։

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՍԿՍՈՒԱԾԸ

Ըստ Արեւելեան սովորութեան, եկեղեցին օրուան 24 ժամերը կը հաշուէ արեւի մարը մտնելէն մինչեւ յաջորդ օրուան արեւի մուտքը։

Տաճկաց եւ Հրէից օրերն ալ այսպէս են. հինգշաբթի օրը երբ մթննայ կ'սկսի ՈՒՐԲԱԹԸ եւ կը տեւէ 24 ժամ. Նմանապէս երբ ուրբաթ օրը մթննայ կ'սկսի

(1) Ինքնին կը հասկցուի որ այդ միջոցներուն պատահող շաբաթապահքերուն և Բարեկենդաններուն ալ հարսնիք չըլլար։

շաբաթը եւ կը տեւէ 24 ժամ, եւ երբ շաբաթը մթննայ Կիրակմուտ կ'ըլլայ. այսինքն՝ կիրակին կը մտնենք եւ աս ալ կը տեւէ 24 ժամ: Օրերու տեւողութիւնը, ըլլայ կարճ, ըլլայ երկար, 12 ժամ կը բռնուի:

Ինչպէս մենք Կիրակամուտ կ'ըսենք, կրնանք նաեւ ըսել Ուրբաթամուտ՝ Տաճկաց վերաբերութեամբ, եւ Շաբաթամուտ՝ Հրէից վերաբերութեամբ:

Ուրեմն եկեղեցիի օրերը կ'սկսին երեկոյին, եւ ճիշդ այս է պատճառն որ Շաբաթ երեկոյները Կիրակամուտ կամ Կիրամուտ կ'ըսուին: Եւ իրաւի, տէրունական օրը կ'սկսի Շաբաթ երեկոյները «Կեցո՛, Տէր»ով եւ կը վերջանայ կիրակի իրիկուան «Կեցո՛, Տէր»ով, ինչպէս ըսինք արդէն (տե՛ս էջ 10):

Ասկէ զատ նախատօնակներն ալ, որ երեկոյները կը կատարուին, տօնական օրերու սկսիլը կը հռչակեն:

Եկեղեցական օրերու սկսուածը յայտնապէս կ'երեւի պատկարդրութեան ժամանակ ալ:—Երբ Կիրակին կ'երեկոյանայ՝ հարսնիքներ կ'սկսին եւ պսակ կը դրուի, որովհետեւ այդ երեկոյներն են որ ԲՇ. ները կ'սկսին:

## ՊԱՏԱՐԱԳԻ ՕՐԵՐԸ ԵՒ ԺԱՄԵՐԸ

Պատարագը ըստ հին սովորութեան ամեն օր կը մատուցուէր մեր եկեղեցւոյ մէջ: Ցետոյ ՇԲ. և Կիրակի օրերու յատուկ եղաւ այս սովորութիւնը զոր դեռ շատ եկեղեցիներ ունին. իսկ հաստատապէս ամեն կիրակի կը մատուցուի պատարագը:

Պատարագը կը մատուցուի,

1. Բոլոր Տէրունի օրերուն.
2. Տեղական եկեղեցիներու Տարեդարձին.
3. Տեղական եկեղեցիներու ուխտի օրերուն.
4. Տեղ տեղ Պասկի օրհնութեան ատեն ԲՇ առտուն.

5. Յուղարկաւորութեան հանդիսին (եթէ ուզուի).
6. Կոնակի մը համաձայն (եթէ կայ) ։

Պատարագի ժամերը ընդհանրապէս ճաշու բացատրութեան տակ կ'իմացուին ։ Իսկ ճաշու ըսելով կէս օրէն յառաջ 3րդ. ժամ կը հասկցուէր, կամ ընդհանուր իմաստով ճաշի առեններ ։

Ասկէ կը հետեւի որ ընդհանրապէս կէս օրէն յառաջ կը մատուցուի Պատարագը ։

Բացառութիւն են Ծրագալոյցներու և Ծննդեան ու Զատկի Պատարագները, որ երեկոյին և գիշերը (Ծնընդեանն) առտուն կանուխ կը մատուցուին ։

Բացառութիւն են յուղարկաւորութեանց Պատարագներու ժամերն ալ ։

Ուխտատեղիներու մէջ՝ ինչպէս իմ գիտցածներէս Երուսաղէմ և Արմաշ՝ ուտիք, պահք չունին. բացառիկ կարգադրութիւններու և սովորութիւններու (մանաւանդ Երուսաղէմ) համեմատ պատարագ կը մատուցուի ։

## ՔԱՐՈԶԻ ԱՏԵՆԸ

Քարոզելու համար սովորութիւն եղած է ընդհանրապէս Տէրունի և Տօն օրեր ։

Մեր եկեղեցւոյ արդի կարգադրութեան մէջ քարոզները կը խօսուին ընդհանրապէս ճաշու ընթերցուածներէն անմիջապէս յետոյ և ճաշու Աւետարանէն անմիջապէս յառաջ ։

— Տեղ տեղ կը քարոզեն նաև Պատարագի միջոցին «Հայր մեր» էն յառաջ ։ Աւագ Հինգշաբթի օրուան քարոզը, որ ազօթքի ձեւով կը կարդացուի, ամէնէն ստոյգ հետքն է այս սովորութեան ։ [1]

---

[1] Էջմիածին ալ «Հայր մեր» էն յառաջ կը քարոզեն ։ Իսկ մեր մէջ՝ Պատարագի սկիզբը «Մեղեդի»ի տեղ ալ կը քարոզեն երբեմն ։

Կը քարոզուի նաև Մեծ Պահքի կիրակի երեկոյները։ Ասոնք ընդհանուր և հաստատուն ձև մը առած են կարծես ։

Մեր եկեղեցիին մէջ, սակայն, բեմը միշտ բաց է երբ խօսող ըլլայ և ունկնդիրներ գտնուին ։

## «ԳԻՐ ՏԱՐԻՈՅ»

Ասիթ ունեցանք ըսելու (էջ 12, 14, 16) թէ Զատիկը շարժական տօն մըն է և թէ կը շարժի Մարտ 21—Ապրիլ 25՝ երեսուն հինգ օրերու մէջ. և այսպէս կը շարժին նաև ա՛յն բոլոր տօներ, որ Զատկին կապուած են ։

Արդ՝ ցուցնելու համար թէ Զատիկը իւրաքանչիւր տարին՝ այդ 35 օրերէն որո՞ւն պիտի հանդիպի. — հայերէն այբուբենին 35 գիրերը գործածուած են իւրաքանչիւր տարուան Զատկի օրը գտնելու համար ։

Այսպէս՝ մենք գիտենք որ Զատիկը կը տօնուի անպատճառ գարնանային գիշերահաւասարէն, այսինքն՝ Մարտ 21էն յետոյ լրացող լուսնի կիրակին. հետեւաբար Մարտ 21էն յառաջ Զատիկ չտօնուիր ։ Իսկ Մարտ 21էն անմիջապէս յետոյ Զատիկ տօնելու կիրակի օրը կը հանդիպի Մարտ 22ին ։ Արդ, ա՛յն տարին, որու Մարտ 22ին Զատիկ պիտ՛ըլլայ, հաստատուն գիր մ'ունի իրեն համար. — Այբուբենի առաջին գիրը, Ա, է դա ։

Ա՛լ դիւրին է կարգով շարել այբուբենի միւս գիրերը երեսուն հինգ տարիներու 35 Զատկի օրերուն համար, այսպէս.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1<br>Ա<br>Մարտ 22 | 2<br>Բ<br>Մարտ 23 | 3<br>Գ<br>Մարտ 24 | 4<br>Դ<br>Մարտ 25 | 5<br>Ե<br>Մարտ 26 | 6<br>Զ<br>Մարտ 27 |
| 7<br>Է<br>Մարտ 28 | 8<br>Ը<br>Մարտ 29 | 9<br>Թ<br>Մարտ 30 | 10<br>Ժ<br>Մարտ 31 | 11<br>Ի<br>Ապրիլ 1 | 12<br>Լ<br>Ապրիլ 2 |
| 18<br>Խ<br>Ապրիլ 3 | 14<br>Ծ<br>Ապրիլ 4 | 15<br>Կ<br>Ապրիլ 5 | 16<br>Հ<br>Ապրիլ 6 | 17<br>Ձ<br>Ապրիլ 7 | 18<br>Ղ<br>Ապրիլ 8 |
| 19<br>Ճ<br>Ապրիլ 9 | 20<br>Մ<br>Ապրիլ 10 | 21<br>Յ<br>Ապրիլ 11 | 22<br>Ն<br>Ապրիլ 12 | 23<br>Շ<br>Ապրիլ 13 | 24<br>Ո<br>Ապրիլ 14 |
| 25<br>Չ<br>Ապրիլ 15 | 26<br>Պ<br>Ապրիլ 16 | 27<br>Ջ<br>Ապրիլ 17 | 28<br>Ռ<br>Ապրիլ 18 | 29<br>Ս<br>Ապրիլ 19 | 30<br>Վ<br>Ապրիլ 20 |
| 31<br>Տ<br>Ապրիլ 21 | 32<br>Ր<br>Ապրիլ 22 | 33<br>Ց<br>Ապրիլ 23 | 34<br>Ւ<br>Ապրիլ 24 | 35<br>Փ<br>Ապրիլ 25 | 36<br>Ք |

*Ինչպէս որ կը տեսնուի, 35 տարիներուն իւրաքանչիւրը մէյ մէկ գիր կ'ունենայ այսպէս . և այս գիրերն են որ «Գիր տարւոյ» կամ «Տարեգիր» ըսուած են ։*

*Տարեգիրով կը գտնուի Զատիկը, Շարժական տօ-*

ները, եայլն: Վերջապէս Տարեգիրն է որ Տոնացոյցը կը կառավարէ:

Տոնացոյցի ամենէն վերջը դրուած են զոյգ մը աղիւսակներ: Անոնց առաջինը կ'ըսուի **Մշտնջենաւոր մեծ շրջան կամ Հնգհարիւրամեակ** և երկրորդը՝ **Պարզատումար**:
Մշտնջենաւոր հնգհարիւրամեակը կը ներկայացնէ, ի միջի այլոց, մշտնջենաւոր Տարեգիրները:

Պարզատումարը կը ցուցնէ բոլոր Շարժական տօներու, «Միջոց ուտիք»ներու եայլն, ամսաթիւերն ու օրերը շատ որոշ կերպով:
Պէտք է գիտնալ որ Տոնացոյցի Բ. հատորը, 36 գլուխներով, ընդարձակ պարզատումար մըն է, ուր պարզուած են Շարժական տօներու մասին բոլոր գիտելիքներ:

Այս բոլոր գիտելիքները օգտակար ընելու համար, գիտնալու է **Տարին** և այդ **Տարուան գիրը** (= Տարեգիրը):
Բայց որովհետեւ Տարեգիրներուն գիւտը մասնաւոր հաշիւներով կ'ըլլայ և այդ հաշիւը բաւական ալ դժուար է Տոնացոյցով և Տոմարով միշտ չզբաղողներուն համար, ասկէ զատ, շատեր նոյն իսկ Տոնացոյցին մէջ դրուած աղիւսակներն ալ չեն կարող գործածել. մենք այս տեղ կը պարզենք մշտնջենաւոր հնգհարիւրամեակի աղիւսակը. աւելի ճիշդը 532 տարիներու հաստատուն շրջանին աղիւսակը, 1900 էն մինչև 2432 Թուականը:

# 532 ՏԱՐՈՒԱՆ ՄԾՏՆՋԵՆԱՒՈՐ ՇՐՋԱՆԸ

| Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1900 | ՄՃ | 1940 | ՊԶ | 1980 | ԴԳ | 2020 | ԶՀ | 2060 | ՇՆ | 2100 | ՍՌ |
| 1 | Ւ | 1 | Զ | 1 | Շ | 1 | Ս | 1 | Է | 1 | Մ |
| 2 | Ո | 2 | Բ | 2 | Կ | 2 | Ց | 2 | Ջ | 2 | Ե |
| 3 | Հ | 3 | Ն | 3 | Փ | 3 | Խ | 3 | Ճ | 3 | Զ |
| 4 | ԸԷ | 4 | ԾԽ | 4 | ՄՃ | 4 | ՑՐ | 4 | ԻԺ | 4 | ԶՀ |
| 5 | Ջ | 5 | Ց | 5 | Ի | 5 | Զ | 5 | Շ | 5 | Ա |
| 6 | Լ | 6 | Ղ | 6 | Տ | 6 | Թ | 6 | Կ | 6 | Ց |
| 7 | Ր | 7 | Ժ | 7 | Հ | 7 | Ս | 7 | Է | 7 | Խ |
| 8 | ՈԾ | 8 | ՎՍ | 8 | ԸԷ | 8 | ԾԽ | 8 | ՋՊ | 8 | ՑՐ |
| 9 | Ը | 9 | Ց | 9 | Ջ | 9 | Օ | 9 | Ի | 9 | Զ |
| 1910 | Ռ | 1850 | Ջ | 1990 | Լ | 2030 | Զ | 2070 | Տ | 2110 | Թ |
| 1 | Մ | 1 | Պ | 1 | Դ | 1 | Ժ | 1 | Հ | 1 | Ս |
| 2 | ԵԴ | 2 | ՂԶ | 2 | ՈԾ | 2 | ՎՍ | 2 | ԸԷ | 2 | ԾԽ |
| 3 | Ո | 3 | Բ | 3 | Կ | 3 | Ց | 3 | Ջ | 3 | Ե |
| 4 | Հ | 4 | Ն | 4 | Ռ | 4 | Ջ | 4 | Ճ | 4 | Զ |
| 5 | Ա | 5 | Ծ | 5 | Մ | 5 | Պ | 5 | Դ | 5 | Ժ |
| 6 | ՑՍ | 6 | ԻՑ | 6 | ԼԻ | 6 | ՂԶ | 6 | ՈԾ | 6 | ՎՍ |
| 7 | Լ | 7 | Ղ | 7 | Ո | 7 | Բ | 7 | Կ | 7 | Ց |
| 8 | Ր | 8 | Ժ | 8 | Հ | 8 | Ն | 8 | Փ | 8 | Խ |
| 9 | Զ | 9 | Վ | 9 | Ը | 9 | Ծ | 9 | Մ | 9 | Պ |
| 1920 | ԹԸ | 1960 | ԿԾ | 2000 | ՌՋ | 2040 | ԻՑ | 2080 | ԼԻ | 2120 | ՂԶ |
| 1 | Ռ | 1 | Ջ | 1 | Լ | 1 | Ղ | 1 | Տ | 1 | Թ |
| 2 | Խ | 2 | Պ | 2 | Ր | 2 | Ժ | 2 | Հ | 2 | Ո |
| 3 | Ե | 3 | Ի | 3 | Ո | 3 | Վ | 3 | Ը | 3 | Ծ |
| 4 | ԶՈ | 4 | ՏՎ | 4 | ԹԸ | 4 | ՆՑ | 4 | ՌՋ | 4 | ՋԵ |
| 5 | Հ | 5 | Ն | 5 | Ռ | 5 | Ջ | 5 | Լ | 5 | Զ |
| 6 | Ս | 6 | Է | 6 | Մ | 6 | Պ | 6 | Դ | 6 | Ժ |
| 7 | Ց | 7 | Ջ | 7 | Ե | 7 | Ղ | 7 | Ո | 7 | Վ |
| 8 | ԽԼ | 8 | ՃՂ | 8 | ԶՈ | 8 | ԳԲ | 8 | ՀԿ | 8 | ՆՑ |
| 9 | Ր | 9 | Ժ | 9 | Հ | 9 | Ն | 9 | Ռ | 9 | Ջ |
| 1930 | Զ | 1970 | Շ | 2010 | Ա | 2050 | Ծ | 2090 | Մ | 2130 | Պ |
| 1 | Թ | 1 | Կ | 1 | Ց | 1 | Ի | 1 | Ե | 1 | Ղ |
| 2 | ՍՌ | 2 | ԷՋ | 2 | ԽԼ | 2 | ՃՂ | 2 | ԶՈ | 2 | ԳԲ |
| 3 | Խ | 3 | Պ | 3 | Ր | 3 | Ժ | 3 | Հ | 3 | Ն |
| 4 | Ե | 4 | Ի | 4 | Զ | 4 | Վ | 4 | Ը | 4 | Ծ |
| 5 | Զ | 5 | Տ | 5 | Թ | 5 | Կ | 5 | Ց | 5 | Ի |
| 6 | ԺԹ | 6 | ՇՆ | 6 | ՍՌ | 6 | ԷՋ | 6 | ԽԼ | 6 | ՃՂ |
| 7 | Ս | 7 | Է | 7 | Խ | 7 | Պ | 7 | Ր | 7 | Ժ |
| 8 | Ց | 8 | Ջ | 8 | Ե | 8 | Ի | 8 | Ո | 8 | Վ |
| 9 | Ջ | 9 | Ճ | 9 | Զ | 9 | Տ | 9 | Թ | 9 | Կ |

## 532 ՏԱՐՈՒԱՆ ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐ ՇՐՋԱՆԸ

| Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 2140 | ԷՋ | 2180 | ԽԼ | 2220 | ՊՉ | 2260 | ՐՏ | 2300 | ԺԹ | 2340 | ՀԿ |
| 1 | Պ | 1 | Դ | 1 | Ժ | 1 | Ւ | 1 | Ս | 1 | Է |
| 2 | Ղ | 2 | Ո | 2 | Վ | 2 | Ը | 2 | Ծ | 2 | Ջ |
| 3 | Գ | 3 | Թ | 3 | Ն | 3 | Ռ | 3 | Ջ | 3 | Լ |
| 4 | ՇՆ | 4 | ՍՌ | 4 | ԷՋ | 4 | ՄՃ | 4 | ՊՉ | 4 | ՐՑ |
| 5 | Ծ | 5 | Մ | 5 | Պ | 5 | Դ | 5 | Ժ | 5 | Շ |
| 6 | Ի | 6 | Ռ | 6 | Ղ | 6 | Ո | 6 | Վ | 6 | Ը |
| 7 | Ճ | 7 | Չ | 7 | Գ | 7 | Հ | 0 | Ն | 7 | Ռ |
| 8 | ԻԺ | 8 | ՉՀ | 8 | ՇՆ | 8 | ՔՓ | 8 | ԾԽ | 8 | ՄՃ |
| 9 | Վ | 9 | Ը | 9 | Ծ | 9 | Մ | 9 | Պ | 9 | Դ |
| 2150 | Կ | 2190 | Ց | 2230 | Ի | 2270 | Լ | 2310 | Ղ | 2350 | Ո |
| 1 | Է | 1 | Խ | 1 | Ճ | 1 | Ր | 1 | Ժ | 1 | Հ |
| 2 | ՋՊ | 2 | ՑՐ | 2 | ԻԺ | 2 | ՉՀ | 2 | ՎՍ | 2 | ԸԷ |
| 3 | Ի | 3 | Ո | 3 | Վ | 3 | Ը | 3 | Ծ | 3 | Մ |
| 4 | Տ | 4 | Թ | 4 | Կ | 4 | Ռ | 4 | Ջ | 4 | Լ |
| 5 | Շ | 5 | Ս | 5 | Է | 5 | Խ | 5 | Պ | 5 | Ր |
| 6 | ԸԷ | 6 | ՑՄ | 6 | ՋՊ | 6 | ԵԴ | 6 | ԻԺ | 6 | Ւ |
| 7 | Ջ | 7 | Ե | 7 | Ղ | 7 | Ո | 7 | Վ | 7 | Ը |
| 8 | Ճ | 8 | Չ | 8 | Գ | 8 | Թ | 8 | Ն | 8 | Ռ |
| 9 | Դ | 9 | Ձ | 9 | Շ | 9 | Ս | 9 | Է | 9 | Խ |
| 2160 | ՈՇ | 2200 | ՔԱ | 2240 | ԿԾ | 2280 | ՑՄ | 2320 | ՋՊ | 2360 | ԵԴ |
| 1 | Կ | 1 | Ց | 1 | Ի | 1 | Ե | 1 | Ղ | 1 | Ո |
| 2 | Է | 2 | Խ | 2 | Ճ | 2 | Չ | 2 | Գ | 2 | Հ |
| 3 | Մ | 3 | Ց | 3 | Ի | 3 | Ձ | 3 | Շ | 3 | Ս |
| 4 | ԼՐ | 4 | ՂՉ | 4 | ՏՎ | 4 | ԹԸ | 4 | ԿԾ | 4 | ՑՄ |
| 5 | Ր | 5 | Թ | 5 | Կ | 5 | Ց | 5 | Ի | 5 | Լ |
| 6 | Ւ | 6 | Ս | 6 | Է | 6 | Խ | 6 | Ճ | 6 | Ր |
| 7 | Ը | 7 | Ծ | 7 | Ջ | 7 | Ց | 7 | Ի | 7 | Չ |
| 8 | ՌՋ | 8 | ՋԵ | 8 | ԼԻ | 8 | ՉՈ | 8 | ՏՎ | 8 | ԹԸ |
| 9 | Ճ | 9 | Չ | 9 | Տ | 9 | Թ | 9 | Կ | 9 | Ռ |
| 2170 | Դ | 2210 | Ժ | 2250 | Շ | 2290 | Ս | 2330 | Է | 2370 | Խ |
| 1 | Ո | 1 | Վ | 1 | Ը | 1 | Ց | 1 | Ջ | 1 | Ե |
| 2 | ՀԿ | 2 | ՆՑ | 2 | ՌՋ | 2 | ՋԵ | 2 | ՃՂ | 2 | ՉՈ |
| 3 | Փ | 3 | Խ | 3 | Ճ | 3 | Չ | 3 | Գ | 3 | Թ |
| 4 | Մ | 4 | Պ | 4 | Դ | 4 | Ձ | 4 | Շ | 4 | Ս |
| 5 | Լ | 5 | Ղ | 5 | Ո | 5 | Ր | 5 | Կ | 5 | Ց |
| 6 | ՐՑ | 6 | ԺԹ | 6 | ՀԿ | 6 | ՆՑ | 6 | ՓԻ | 6 | ՋԵ |
| 7 | Հ | 7 | Ս | 7 | Է | 7 | Խ | 7 | Ճ | 7 | Չ |
| 8 | Ը | 8 | Ծ | 8 | Մ | 8 | Ց | 8 | Ի | 8 | Ձ |
| 9 | Ռ | 9 | Ջ | 9 | Լ | 9 | Ղ | 9 | Ո | 9 | Ք |

| 532 ՏԱՐՈՒԱՆ ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐ ՇՐՋԱՆԸ | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր | Տարի | Տարեգիր |
| 2380 | ՆՑ | 2390 | Բ | 2400 | ԻԺ | 2410 | Պ | 2420 | ՓԻ | 2430 | Կ |
| 1 | Խ | 1 | Ն | 1 | Վ | 1 | Ի | 1 | Ճ | 1 | Ռ |
| 2 | Ց | 2 | ԾԽ | 2 | Ն | 2 | ՏՎ | 2 | Ի | | |
| 3 | Ղ | 3 | Ց | 3 | Է | 3 | Ն | 3 | Տ | | |
| 4 | ԺԹ | 4 | Ղ | 4 | ՋՊ | 4 | Է | 4 | ՀԿ | | |
| 5 | Ս | 5 | Ժ | 5 | Ղ | 5 | Ջ | 5 | Է | | |
| 6 | Յ | 6 | ՎՍ | 6 | Ժ | 6 | ՃՂ | 6 | Ջ | | |
| 7 | Ջ | 7 | Ծ | 7 | Շ | 7 | Գ | 7 | Լ | | |
| 8 | ՊՁ | 8 | Չ | 8 | ԿԾ | 8 | Շ | 8 | ԴԳ | | |
| 9 | Ձ | 9 | Պ | 9 | Չ | 9 | Կ | 9 | Շ | | |

Այս մշտնջենաւոր աղիւսակին լաւ ուշադրութիւն ընելով քանի մը կարեւոր կէտեր մատնանիշ կ'ընենք․

Ա․ — Տարեգիրները այբուբենական կարգով իրարու չեն յաջորդած․ այլ՝ կարծես խառն ի խուռն։ Ասոր պատճառը սա է․ որովհետեւ երբ տարի մը Մարտ 22ին Զատիկ ըլլայ, յաջորդ տարին՝ Մարտ 23ին եւ միւս տարին Մարտ 24ին Զատիկ չըլլար որ Տարեգիրներն ալ այբուբենական կարգով իրարու յաջորդէին։

Բ․ — Թէեւ Տարեգիրներու ծանօթ ու աւանդական այբուբենական կարգը խախտած է այդպէս, բայց 532 տարիներու մշտնջենաւոր շրջանին մէջ ալ հաստատուն կարգի մը վերածուած են։ Այնպէս որ 532 տարիներու իւրաքանչիւրին առջեւ միանգամ ընդմիշտ Տարեգիրները դնելէ յետոյ, երբ այդ պատկառելի շրջանը բոլորի լմննայ, այս անգամ միայն Տարեգիրներու առջեւ դրուած տարիները նորոգելով՝ դարձեալ կ'շարունակուի Տարեգիրներու հաստատ եւ մշտնջենաւոր գործածութիւնը։ Այսինքն՝ 532 տարիները լմննալէ յետոյ բա-

ւական է մեր չինած ցուցակին տարիները ջնջել եւ սկիզբը դրուած Տարեգրին առջեւը դնել 2433 եւ շարունակել մինչեւ 2965, եւ այսպէս շարունակ ։

Գ. — Տեսանք թէ 532 տարիներէ շատերուն առջեւ Տարեգիրները զոյգ դրուած են ։ Այդ զոյգ Տարեգիր ունեցող տարիներ Նահանջ (1) կ'ըսուին ։

Զոյգ Տարեգիրներուն մէկը կ'գործածուի Յունվարի առջի օրէն մինչեւ Փետրվարի վերջը, ամբողջ 2 ամիս ։ Իսկ միւսը կ'գործածուի Մարտի առջի օրէն մինչեւ Դեկտեմբերի վերջը, ամբողջ 10 ամիս ։

Զոր օր. 1900ը Նահանջ տարի է որու Տարեգիրն է ՄԾ ։ Առաջին գիրը՝ (Մ) կ'գործածուի Յունվար եւ Փետրվար՝ ամբողջ 2 ամիս, իսկ երկրորդ գիրը՝ (Ծ) կ'գործածուի Մարտէն մինչեւ Դեկտեմբերին վերջը՝ ամբողջ 10 ամիս ։

Ինչպէս որ կ'տեսնուի Զոյգ-Տարեգիրներն ալ այբուբենական կարգով չեն դրուած, այսինքն՝ փոխանակ ԾՄ դրուելու, դրուած է ՄԾ ։ Բոլոր Զոյգ-Տարեգիրներն ալ այսպէս են ։

Այս ետեւառաջութեան պատճառը սա է. գիտենք որ Նահանջ տարիներուն Փետրվար ամսուն օրերը հասարակ տարիներու Փետրվար ամսու օրերէն օր մ'ԱՒԵԼԻ են (28 + 1 = 29) ։ Արդ ո՛ եւ է Նահանջ տարուան Փետըրվարին այդ աւելի մէկ օրը նշանակելու համար ա՛յն Տարեգիրը կ'գործածուի, որ բուն տարեգրին յաջորդն է գրերու այբուբենական կարգին մէջ, հետեւաբար թիւմըն ալ աւելի ։

Եւ ա՛յս է պատճառն որ ա՛յդ օգնական Տարեգիրը՝

(1) Նահանջ են այն տարիները, որոնց օրերուն թիւը 365ի տեղ 366 կ'ըլլայ ։ Այդ մէկ օրը կ'աւելնայ Փետրվար ամսուն օրերը 28ի տեղ 29 հաշուելով ։ — Չորս տարին անգամ մը Նահանջ տարի կ'ըլլայ ։

Յունուար եւ Փետրուար ամիսները լրանալէ յետոյ՝ կ՚թող-ուի (որովհետեւ իր պաշտօնը լմնցուցեր է) եւ բուն Տա-րեգիրը կ՚գործածուի մնացած 10 ամիսներուն համար ։

## ՏԱՐԵԳԻՐՈՎ ԶԱՏԻԿԸ ԳՏՆԵԼ

532 տարուան մշտնջենաւոր շրջանին մէջ ուզած տարւոյ ու անոր Տարեգիրը գտնելէ յետոյ ա՛լ շատ դիւ-րին է Տօնացոյցին Բրդ հատորը, այսինքն՝ պարզատո-մարը գործածել, ո՛ւր ո՛չ միայն Զատկի ամսաթիւն ու օրը նշանակուած է, այլ նաեւ ուրիշ տօներու ամսա-թիւերն ու օրերը, եւայլն ։

Ասկէ զատ, առանց Տօնացոյցի ալ դիւրին է գտնել ուզուած ո եւ է տարուան Զատիկը ։

Զոր օր. կ՚ուզեմ գիտնալ թէ 1900 ին Զատիկը ե՞րբ է ։

Գիտենք արդէն թէ Զատիկը անպատճառ Մարտ 21էն ետքը կ՚ըլլայ եւ մինչեւ Ապրիլ 25, երեսուն հինգ օրերու կիրակիներէն մէկուն կ՚պատահի (էջ 16) ։ — Գիտենք նաեւ թէ 1900 ի Տարեգիրն է (ՄԾ) ։

Արդ Մարտ 21ին վրայ կ՚աւելցնեմ (Ծ) այբուբե-նական կարգին թիւը, (տե՛ս էջ 33 ալիւսակը) որ է 19, կ՚ունենամ $21 + 19 = 40$ ։ Քառասունէն հանելով Մարտ ամսուն 31 օրերուն թիւը, կ՚ունենամ $40 - 31 = 9$ Ապրիլ ։ — Ուրեմն 1900 ին Ապրիլ 9 ին Զատիկ է ։

Ուրիշ օրինակ մը. 1905 ին Զատիկը ե՞րբ է ։

Այդ տարուան Տարեգիրն է (Ջ), որու այբուբենա-կան կարգին թիւն է 27 ։

Արդ՝ Մարտ $21 + 27 = 48$, որմէ հանելով Մարտի

31 օրերուն թիւը, կ'ունենանք 48—31 = 17 Ապրիլ, որ է 1905 ին Զատկի օրը։

*Օրինակ մըն ալ, 1915 ին Զատիկը ե՞րբ է։*

Այդ տարուան Տարեգիրն է (Ա), որուն այբուբենական կարգին թիւը՝ 1։

Արդ՝ Մարտ 21 + 1 = 22 Մարտ։ Ուրեմն 1915ին Զատիկը պիտի ըլլայ Մարտ 22 ին։

*Դարձեալ՝ 1945ին Զատիկը՝ ե՞րբ է։*

Այդ տարուան Տարեգիրն է (Ց), որուն այբուբենական կարգին թիւն է 33։

Արդ՝ Մարտ 21 + 33 = 54. հանելով Մարտի 31 օրերը, կ'ունենանք 23 Ապրիլ։

Ուրեմն՝ 1945 ին Զատիկն ալ պիտի ըլլայ Ապրիլ 23 ին։

Այս բոլոր օրինակներէն սա կանոնը կը հետեւցնենք.

Զատիկը գտնելու համար Մարտ 21 ին վրայ գումարէ ուզած տարիին Տարեգրին այբուբենական կարգին թիւը. գումարը եթէ Մարտ ամսու 31 օրերու թիւէն աւելի է, հանէ այդ 31ը եւ մնացածը ցոյց կուտայ Ապրիլ ամսու Զատկին ամսաթիւը: Իսկ եթէ գումարը Մարտ ամսու 31 օրերու թիւէն աւելի չէ, յայտնի է որ այդ գումարը ցոյց կուտայ Մարտ ամսու Զատկին ամսաթիւը:

*Համառօտենք այդ կանոնը.*

Ա. — Զատիկը Մարտ ամսու մէջ.

Մարտ 21 + Տարեգրի թիւը = Մարտ + Զատիկ։

Կամ. Մ. 21 + Տ. Թ. = Մ. + Զ։

Բ. — Զատիկը Ապրիլ ամսու մէջ։

Մարտ 21 + Տարեգրի թիւը = Մարտ Ապրիլ + , պակաս Մարտ 31 = Ապրիլ + Զատիկ ։
Կամ. Մ. 21 + Տ. Թ. = Մ. Ա. + — Մ. 31 = Ա + Զ ։

## ՏԱՐԵԳՐՈՎ ՏՕՆԵՐ ԳՏՆԵԼ

Տարեգրի մը այբուբենական կարգին թիւը աւելցնելով (= գումարելով) այլ եւ այլ հաստատուն ամսաթիւերու վրայ, կ'գտնենք կարգ մը նշանաւոր տօներուն ու օրերուն ամսաթիւերը ։

Հիմայ՝

1. Աւելցո՛ւր Յունվար 10 ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Առաջաւորաց Բարեկենդանը.

2. Աւելցո՛ւր Յունվար 31ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Բուն Բարեկենդանը ։ — Ուրիշ խօսքով Փետրվար մէկէն համրէ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Բուն Բարեկենդանը ։

3. Աւելցո՛ւր Մարտ 21 ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը կ'գտնես Զատիկը (արդէն երկար բացատրեցինք այս կէտը) ։

4. Աւելցո՛ւր Ապրիլ 18 ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Երեւման Խաչը ։

5. Աւելցո՛ւր Ապրիլ 29ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Համբարձումը:

6. Աւելցո՛ւր Մայիս 9ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Հոգեգալուստը։

7. Աւելցո՛ւր Մայիս 30ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Ս. Գրիգոր Լուսաւորչի (Գիւտ Նշխարաց) Բարեկենդանը։

8. Աւելցո՛ւր Յունիս 27ի վրայ Տարեգրի այբուբենական կարգին թիւը, կ'գտնես Վարդավառը։

**Ծանօթութիւն.** — Այս բոլոր յաւելումներու մէջ երբ գումարը ամսուան 30 կամ 31 օրերէն աւելի ըլլայ, միշտ վրան թիւը գումարուած ամսուն օրերուն թիւը պիտի հանես եւ մնացածը պիտի ըլլայ փնտռուած տօնին ամսաթիւը։

Զատիկը գտնելու առթիւ յառաջ բերուած օրինակներու մէջ տեսանք արդէն այս գործողութեան եղանակները։

9. Երբ Տարեգրի այբուբենական կարգի թիւին վրայ աւելցնես 4 եւ գումարը բաժնես 7ով, յառաջ եկած թիւը կ'ցուցնէ թէ Վերափոխումը Օգոստոս 12—18, ո՞ր օրը (կիրակի) պիտի հանդիպի։—Առաջին թիւը միշտ օգոստ. 12 բռնելու է։

10. —Նոյնպէս՝ երբ Տարեգրի այբուբենական կարգի թիւին վրայ աւելցնես 2 եւ գումարը բաժնես 7ով, յառաջ եկած թիւը կ'ցուցնէ թէ Խաչվերացը Սեպտեմբեր 11—17 ո՞ր օրը (կիրակի) պիտի հանդիպի։ — Հոս ալ առաջին թիւը Սեպտ. 11 բռնելու է։

11. —Խաչվերացի կիրակիէն հաշուելով Երրորդ կիրակին անպատճառ կ'տօնուի Վարագայ Ս. Խաչը։

Ինչպէս որ տեսնուեցաւ, Տարեգիրը կարեւոր դեր մը կ'կատարէ Տօմարական եւ Տօնացուցական հաշիւներու մէջ։

Տարեգրի մասին մեր ցոյց տուածէն աւելի գիտելիքներ մասնագէտներուն կ'վերաբերին։

Տարեգրին ամենէն գործնական ու ամենէն դիւրին գործածութիւնը մեր նշանակած օրինակներու մէջ ամփոփուած ու ցոյց տրուած է։ Այսչափն ալ հերիք է ժողովրդեան համար։

---

# ՏՕՆԱԿԱՆ ՄԵԾ ՕՐԵՐ

**1. ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ.** Բառական ճշդութեամբ կը նշանակէ Աստուծոյ յայտնուիլը։ Այդ տօնը մեր Ս. Եկեղեցին կը կատարէ Քրիստոնէական եկեղեցւոյ ամենահին սովորութեան համեմատ՝ Յունուար 6ին, որ օրն ալ հանդիպի, 8 օր տեւողութեամբ։ Որովհետեւ ճշգրիտ հաշիւներով ցուցուած է որ Յունուար 6ին տեղի ունեցած է Յիսուսի Քրիստոսի ծնունդը. եւ այս է պատճառը որ մեր եկեղեցին միայն պարզապէս Աստուածայայտնութիւն չըսէր, այլ եւ Տօն Ծննդեան եւ Մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Որովհետեւ Աստուածայայտնութեան մէջ կըմբռնուի Քրիստոսի՝ իբր Աստուած՝ Ծննդեամբ Մկրտութեամբ եւ իրենց բոլոր պարագաներով(1) մարդոց մէջ յայտնուիլը։ Գիտեն արդէն մեր եկեղեցւոյ զաւակունք թէ Ծննդեան՝ կցուած

---

[1] Այսինքն՝ մոգուց երկրպագութիւնը, եւայլն. Մկրտութեան ատեն Ս. Հոգւոյն իջումը, եւայլն։

է մկրտութեան տօնն ալ եւ ասի կը կատարուի մեր եկեղեցւոյ մէջ Ծննդեան առտուն՝ Խաչը ջուր իջեցնելով ։ Խաչի վրայ մտածելով՝ Քրիստոսը դիւրաւ կ'ըմբռնուի ։ Եւ զայն իջեցնելով ջուրի մէջ՝ Քրիստոսի Յորդանան գետին մէջ մկրտութիւնը կը յիշատակուի ու կը տօնուի ։

— Այն եկեղեցիներ, որ Քրիստոսի Ծնունդը կը տօնեն Դեկտ. 25ին, Մկրտութիւնը կ'տօնեն Յունվ. 6ին ։

Աւելորդ է այս տեղ մեր եկեղեցւոյ ճիշդ հաշիւը անգամ մ'ալ չեշտել ։ Փափաքողներուն կը յանձնարարենք Շնորհալի Ս. Հայրապետին այս խնդրին վրայ գրածները, որ Ընդհանրականի հետ մէկտեղ հրատարակուած է ։

**Բ. ՏՕՆ ԱՆՈՒԱՆԱԿՈՉՈՒԹԵԱՆ.** Միշտ Յուն. 13ին կը տօնուի, որ կը յիշեցնէ Քրիստոսի անուան դրուիլը (կոչուիլը) ։ Հրէական օրէնքով արու մանուկներ իրենց ծնունդէն ութ օր վերջը պիտի թլփատուէին եւ տղուն անունը պիտի դնէին ։ Քրիստոս այդ օրէնքի տակ՝ թլփատեցաւ Իւր ծնունդէն ութ օր յետոյ եւ անունը դրուեցաւ ։ Բայց որովհետեւ Քրիստոնէութիւնը թլփատութիւն չընդունիր, այլ՝ Մկրտութիւն, եւ մկրտութեան ժամանակ տղայոց անունը կը դրուի, Ծննդեան ութերորդ օրը Տօն անուանակոչութեան ըսուած է ։ Դիտելու է որ հին Ձեռագիր տօնացոյցներ, որոնցմէ երկու հատ ունիմ, Ծննդեան ութերորդ օրուան յատուկ յիշատակ մը չեն դրած. որովհետեւ Ծնունդ եւ Յայտնութիւն է դեռ ։ Իսկ Տօնացոյցը կը դնէ ութերորդ աւուրն տօն է Յայտնութեան եւ թլփատութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Իսկ Օրացոյցները ճշդած են զայն եւ ըսած են պարզապէս Տօն անուանակոչութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Ծնունդէն ութ օր ետքը մկրտութիւն ընել եւ անուն դնել այնքան ծանօթ սովորութիւն մըն է որ առ հասարակ մեր մէջ ալ կը գործադրուի ։

**Յ. ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋ.**— Քրիստոսի Իւր Ծնունդէն 40 օր ետքը Տաճար նուիրուելուն տօնն է ։

Հրէական օրէնքով տղայք իրենց ծնունդէն 40 օր ետքը Տաճար տարուելով Աստուծոյ պիտի ընծայուէին ։ Այս առթիւ հարուստ ծնողք մէկ տարեկան գառնուկ մը պիտի նուիրէին Տաճարին, իսկ աղքատներ զոյգ մը աղաւնի ։ Քրիստոսի ծնողաց նուէրը զոյգ մը աղաւնի եղաւ, երբ Իւր ծնունդէն 40 օր ետքը Տաճար տարուեցաւ ընծայուելու համար ։ Այս սովորութիւնը Քրիստոնէական բարքերու մէջ ալ անցաւ. եւ պատճառը այս է որ մեր ծնողք ալ իրենց տղաքները անոնց ծնած օրէն 40 օր հաշուելով եկեղեցի կը տանին եւ քառասունքէն կը հանեն տղաքներուն մայրերը ։ Ծննդաբեր կնոջ համար՝ սկիզբէն ի վեր՝ 40 օր բաւական համարուած է՝ իւր կանոնաւոր կեանքը վերսկսելու համար (1) ։

Տեառնընդառաջ բացատրութիւնը նոր է, որուն այլ եւ այլ մեկնութիւններ յարմարցուած են ։

Ուրիշ բացատրութեամբ Տէրընդառաջ ըսուած է այդ տօնը, զոր ոմանք Տեառնընդառաջին աղաւաղումը նկատեցին ։ Ուրիշներ ալ՝ Հայոց հին հաւատքէն մնացած տօնի մը անուն է ըսին, պնդելով մանաւանդ կրակավառութեան սովորութեան վրայ, որ պատմական առընչութիւն մը չունի Քրիստոսի քառասնօրեայ տաճար գալստեան հետ ։ Շատ հաւանական է որ Տէրընդառաջ հա-

(1) Ա՛յն մայրեր, որոնց քառասունքը Տեառնընդառաջի կը մօտենան, առանց նայելու ճիշտ 40 օրերու թիւին, այսինքն՝ 40 օրերէն պակաս եղած ատեն ալ իրենց քառասունքը կը լմնցնեն Տեառնընդառաջին հետ ։

յոց հին հաւատքին պատկանող տօն մ'ըլլայ ։ Անոնք որ Տէրընտաս բառին հին ծագումը ուրացան, ոչ-գիտական ստուգաբանութիւն մը ըրին ։ Անա հայկազեան բառարանին դիտողութիւնը այս ոչ-գիտական ստուգաբանութեան մասին — Տե՛ս Տեառնընդառաջ բառը «. . . Տէրընտասի օր. զոր յետինք ոմանք կամեցան ըստ կամի՝ մեկնել Տէր ընդ այս յարմարելով եւ աւանդութիւն նոր թէ ընդ արեւելեան դուռն փակեալ (որ օրինակ էր Կուսին) անցեալ իցէ Տէրն ի գիրկս մօր իւրոյ եւ Կուսի. Ասեն Տէր եկաւ ընդ այս դուռն, ուստի Տեառնընդառաջ եւ Տէրընդայս կոչի. իսկ զի՞նչ կրակն լուցանել Տէրընդայս ասել, ծերքն եւ աղայքն շուրջ գային զբոցովն եւ գոչէին, ա՛յ Տէրընդայս, ա՛յ Տէր ընդ այս. Տօնակ ։ Այլ յայտ է թէ կրակավառութիւն հայի ի խորհուրդ բանիցըս, «լոյս ի յայտնութիւն հեթանոսաց» եւ «հուր եկի արկանել», որ են ընթերցուածք Աւետարանի ի Տեառնընդառաջն» ։

— Տէրընտաս բառը սակայն, աւելի ծանօթ է քրիստոնէից՝ կից ունենալով կրակ վառելու սովորութիւնը, զոր եկեղեցին մոմավառութեան վերածելով հանդերձ, չէ՛ կրցած մեծ մեծ խարոյկներ վառելու սովորութիւնը վերցնել ժողովրդեան մէջէն. (1) Այս ամենը միայն բաւական են Տէրընտասի հնութիւնը հին տօնով մը նոյնացնելու ։

**4. ԱՌԱՋԱՒՈՐՔ.** — Առաջաւորաց Բարեկենդան, Առաջաւոր պահք, Պահք առաջաւորաց, այս բոլոր ձեւերուն տակ գործածուած անուն մ'է Առաջաւորք, որ բառական իմաստով կը նշանակէ Առաջող, Կանխող, Յառա-

(1) Հին տօնացոյցեր հրավառութիւն կը հրամայեն բայց Սիմէոնեանը «խոտելի է» կըսէ իբր «ի ազգաց ներմուծեալ» բան մը ։

ջընկրաց, Առաջնորդին ունեցող։ Եւ այսպէս կոչուած է ա՛յն շաբաթապահքը, որ Ծնունդի շաբաթապահքէն ետքը առաջին շաբաթապահքն է, եւ այդ շաբթուն ուրբաթ օրը կը կատարուի Յովնան Մարգարէի եւ Նինուէացւոց յիշատակը, իսկ շաբաթ օրը Ս. Սարգսի տօնը կը կատարուի։ Ասի շաբաթապահք մըն է՝ որ մեծ պահքի առջեւէն կ'երթայ։

Բայց Առաջաւորք կոչման թէ՛ Շնորհալի հայրապետ (Յունաց գրած իր թղթերուն մէջ) եւ թէ՛ ուրիշներ բուն ազգային եւ պատմական նշանակութիւն տուած են որ աւելի սիրուն եւ բանաւոր է։ Առաջաւորք կը յիշեցնեն մեզ Ս. Գրիգոր Լուսաւորչի հաստատած առաջին պահքը, 60,000 հոգիներու մկրտութեան առթիւ։

Որովհետեւ ուրիշ եկեղեցիներ չունին այս պահքը, եւ այդ շաբաթ, ինչպէս ըսինք, Ս. Սարգսի տօնն ալ կը կատարուի, մասնաւորաբար Հոռոմք կը ծիծաղէին Հայոց վրայ՝ իբր Սուրբի մը համար պահք բռնող ազգի մը վրայ։ Այս ծիծաղին աւելի սաստիկ գոյն մը տալու համար Ս. Սարգսին պատմութիւնն ալ ուզածնուն պէս շինեցին։ Խնդիրը՝ ոչինչ խնդիրը՝ ծանր կերպարանք մ'առաւ, եւ Շնորհալի հայրապետ պարտք համարեց կրկին գրութիւններով բացատրել խորհուրդը հոռոմոց եկեղեցւոյն եւ արքունիքին։ Ահա այդ գրութիւններուն մէջ է որ Առաջաւորք Ս. Լուսաւորչէն հաստատուած է, կ'շեշտէ, Շնորհալի հայրապետը։

**Ե. ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆ.** — Բարեկենդան անունը կը տրուի ա՛յն բոլոր օրերուն, որոնց անմիջապէս կը յաջորդեն նշանաւոր շաբաթապահքեր, եւ այդ օրեր արտաքոյ կարգի ուրախութիւններ կ'ըլլան։

Իսկ Բուն Բարեկենդան կամ Մեծ Բարեկենդան է այն օրը, որուն անմիջապէս կը յաջորդէ Մեծ պահք կամ

քուն պահք: Բարեկենդաններ ընդհանրապէս կիւրակէ օրերուն յատուկ են։ (1) Բոլոր Քրիստոնեայ ազգեր ալ Բարեկենդան ունին. Արեւմտեան ազգեր զարնավալ (carnavale) կ'ըսեն, որմէ առնուած է Թրքերէն էթ քէսիմի կամ էթ քէսմէկի բացատրութիւնը. որովհետեւ բարեկենդանին է որ միս կուտեն եւ ա՛լ կը կտրեն, կը դադրին ուտելէ (Թրք. էթսէն քէսիլմէք)։ Ժողովուրդը կը սիրէ ըսել Բարկէնդանք կամ բարկէնիսաք:

Ժողովրդեան մէջ սովորութիւն եղած է նոյն օրն անուանել փակլա խոռան, զոր հայերէնով ստուգաբանել ուզեցին ոմանք իբր «Փակեալ խորան», որովհետեւ այդ օրը եկեղեցւոյ խորանները կը փակուին. բայց ուրիշներ աւելի գիտնականօրէն ստուգաբանեցին զայն պարսկերէնով իբր ընդեղէն (պարսկեր. բակլէ) ուտող-նէր (պրսկ. խուռէն):

**Ե.** Մեծ պահո՛ց կիւրակէները մասնաւոր յիշատակներու նուիրուած են.

Ա. **ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԸ.** — կամ մեծ պահոց առաջին կիրակին՝ ԴՐԱԽՏԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ, այսինքն՝ մարդկային կեանքի ամենէն երջանիկ եւ ամենէն կատարեալ մէկ վիճակին, որուն մէջ ապրեցաւ մարդկային առաջին զոյգը, ըստ Ս. Գրոց։

Բ. **ԱՐՏԱՔՍՄԱՆ ԿԻՐԱԿԻՆ.** — Այսինքն՝ նախաձնողաց արտաքսումը այդ երջանիկ կեանքի դրախտէն եւ մարդոց հիմակուան քրտինքի եւ աշխատութեան կեանքի սկզբնաւորութիւնը։

Գ. **ԱՆԱՌԱԿԻ ԿԻՐԱԿԻՆ.** — Եկեղեցին մարդ-

(1) Ծննդեան Բարկենդանը միայն շաբթուն դ եւ է օրուան կ'պատահի։

կային կեանքի գլխաւոր երկու դէպքերը յիշատակելէ յետոյ երկու կիրակիներուն մէջ, կ'անցնի կեանքի ուրիշ երեւոյթները բացատրելու Քրիստոսի միջոցաւ, որ իւր այլ եւ այլ առակներով եւ վարդապետութիւններով խորին հայեացքներ ունեցած է մարդոց կեանքին ու կենցաղին վրայ։

Այսպէս՝ Անառակ որդիի ծանօթ առակով կը բացատրուի, ընտանեկան կեանքի հիմնական մէկ իրողութիւնը, որ կը կայանայ հօր մը եւ իւր զաւակաց օրինաւոր եւ կանոնաւոր յարաբերութիւններուն խանգարումին եւ վերականգնումին մէջ. եւ երբ այս իրողութիւնը մտածէք Հօր Աստուծոյ եւ մարդոց (Աստուծոյ զաւակներուն) յարաբերութիւններուն նկատմամբ՝ չուտով ըմբռնած կ'ըլլաք նաեւ Եկեղեցւոյ այդ Կիրակիին տուած խորհրդաւորութիւնը։

Դ. **ՏՆՏԵՍԻ ԿԻՐԱԿԻՆ**. — Մարդկային կեանքի ամենէն գործնական եւ մարդիկը ամենէն շատ զբաղեցնող իրողութիւնը կը յիշատակուի այդ օր։ Կեանքի կռիւը, դրամը, վարկը, շուկայի կեանքին ամենէն տարրական կողմերուն ուսումնասիրութիւնը Տնտեսի մը գործողութիւններուն մէջ։

Ե. **ԴԱՏԱՒՈՐԻ ԿԻՐԱԿԻՆ**. — Արդարութեան առջեւ՝ մարդկային իրաւունքներու պաշտպանութեան գերաղանց խնդիրը կ'պարզուի։

Զ. **ԳԱԼՍՏԵԱՆ ԿԻՐԱԿԻՆ**. — Կը յիշատակուի Քրիստոսի գալուստն ու երեւումը մարդոց մէջ։

Է. **ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԿԻՐԱԿԻՆ**. — Կը յիշատակուի Քրիստոսի փառաւոր մուտքն Բեթղեհեմէն Երուսաղէմ եւ Տաճարին մաքրութիւնը անվայել գործառնու-

Թիւններէ ։ Չիթենիի եւ արմաւենիի ճիւղերը, ոստերը, որոնցմով եկեղեցին կ'զարդարուի, բոլոր Քրիստոնեայք գիտեն թէ ժամանակակից ժողովրդեան Քրիստոսի ըրած ցոյցերէն մէկ մասը կ'յիշեցնեն տօնիք ։ Ծաղկազարդը մեր ժողովուրդին մէջ աւելի ծառազարդ կամ զարզար-դար անունով ծանօթ է եւ հաւանականաբար ամենէն ճիշդ անունը ։ Երբեմն Ողոգոմեան (յունարէն կոչումով) եւ օր Արմաւենեաց կամ Արմաւենեաց կիրակի ալ կոչ-ուած է Զարզարդարը ։

Լատին եկեղեցին դեռ այնպէս կ'անուանէ ։

Այս եօթը կիրակիներու մասին տե՛ս «Վերծանողի խորհրդածութիւնները» Բիւզանդիոնի մէջ (1899 թիւ 722 էն սկսեալ ։)

7. ՄԻՋԻՆՔ. — Մեծ պահքի ճիշդ կէսը, որ կը հանդիպի ճիշդ 24րդ օրը, ԴՇ. օր մը ։

Միջինքին՝ տեղական սովորութիւններու համեմատ մեծպահոց ճոխ սեղաններ տեղի կ'ունենան, կամ ար-տաքոյ կարգի բան մը կ'ընեն, գոնէ հացիկ կը խաշեն ։

8. ԱՂՈՒՀԱՑՔ. — Մեծ պահոց բուն անունը ԱՂՈՒՀԱՑ է եկեղեցւոյ մէջ. ինչպէս նաեւ ԱՂՀԱՑՔ կամ ԱՂՑՔ ։ Աղուհացք շատ սովորական գործածութիւն մ'ունի ։ Իսկ Աղցք՝ միայն Շարականի մէջ կը գործածուի այժմ ԱՂՑ ՄԻ՛ ձեւին տակ, որ կրճատուածն է «յաղցիս մի՛ ասեր» բացատրութեան, այսինքն՝ աղցից (աղուհացից = մեծպահքի) մէջ մի՛ ըսեր (մի՛ պաշտեր = մի՛ երգեր) ա՛յն շարականները, որ աղուհացի Հարցերու կարգին մէջ գրուած են եւ որք ուրիշ ատեն երգուելու սահմանուած են ։

Աղուհացք ըսուած է, որովհետեւ այդ օրերուն մէջ

միայն աղ ու հաց ուտուելու էր ըստ ամենէն հին սովորութեան (1) ։

Դիտելու է նաեւ որ Աղ ու հաց ամենէն թանկագին տարրները նկատուած են կեանքի պահպանութեան եւ այս պատճառաւ բաւական համարած է — երբեմն — մեծ պահոց օրերը անցնելու ։ Աղ ու հաց բարեկամութեան, խաղաղութեան, առատութեան եւ հպատակութեան ալ խորհրդանշան է. որովհետեւ արեւելեան սովորութեամբ՝ ժողովրդեան կողմէն իշխանները եւ թագաւորները կը մատուցուին անոնք ափսէի մը մէջ, երբ առնեն այցելեն ո՛ եւ է քաղաք կամ գիւղ իրենց իշխանութեան մէջ ։

**Թ. ԱՒԱԳ ՇԱԲԱԹ**, որ Զատկաշաբաթ, Զատկի շաբաթ ալ կ՚ըսուի, կ՚նշանակէ մեծ Շաբաթ ։ Այս անունով ճանչցուած են այն եօթն օրեր, որ Ծաղկազարդէն յետոյ, ԲՇէն կ՚սկսին եւ Զատկի ճրագալոյցին կը վերջանան ։ Շաբաթ մը՝ որ թէ աղուհացից վերջինն է եւ թէ իւր յիշատակներով ամենէն մեծն (աւագն) է եօթը Շաբաթներուն վրայ՝ իբր ութերորդ ։

Աւագ Շաբաթուան վեց օրերն ալ մասնաւոր յիշատակներու նուիրուած են.

Աւագ ԲՇ. Չորցած Թզենիին.
Աւագ ԳՇ. Տասը կուսանաց.
Աւագ ԴՇ. Քրիստոսի Իւղով օծման՝ կնոջ ձեռքով.

(1) Թրքերէն թուզ էքմէքի խոնարհ բացատրութիւնը բառական իմաստով նոյն է աղուհացի հետ., բայց տարբեր առումով աւելի ընդարձակ իմաստ կուտայ զոր օր. թուզ էքմէքիմիզ վար (ամենէն քիչը՝ աղուհաց կերած ենք միասին, սեղանակից եղած ենք, բարեկամութիւն, մտերմութիւն ունինք) թուզ էքմէք գատրը պիլիր, աղուհացի (կերակուրի, սեղանակցութեան, բարեկամութեան, մտերմութեան) յարգը գիտէ եւայլն։

*Աւագ ԵՇ. Ս. հաղորդութեան* (1) *եւ Ոտնլուայի .*
*Աւագ Ուր. Չարչարանաց, Խաչելութեան եւ Թաղման.*
*Աւագ ՇԲ. Ճրագալոյց .*

*Աղուհացք կամ Մեծ պահք կամ Աւագ պահք կ'ըսուին նաեւ Քառասնորդական պահք կամ պարզապէս Քառասնորդք. որովհետեւ Քրիստոսի քառասնօրեայ ծոմապահութեան հետեւութիւն մըն է այդ ։*

*Բայց ինչպէս վերեւ* (էջ 21) *ալ դիտել տուինք, հիմակուան մեծ պահքը ո՛չ թէ քառասուն, այլ քառասուն ութ օր է ։*

*Նախնիք ճիշդ քառասուն օր պահած ըլլալու համար՝ կամ* 48 *օրերուն կիրակիները ուտիք (նաւակատիքի կերակրով) կ'ընէին* (2) *եւ կամ աւագ Շաբաթը կ'ուտէին՝ դարձեալ նաւակատիքով ։*

*Այս երկու կերպերը, սակայն, բնաւ հետք մը թողած չեն մեր արդի սովորութիւններուն մէջ ։ Շատոնց ի վեր աւելի նախամեծար համարուած է ամբողջ մեծ պահքը չաւրել ։*

**Ծանօթ.** — *Մեծպահքի ծագումը երկու օր եղած է նախ (տե՛ս Վարդապետութիւն Առաքելոց եւայլն Հ. Յ. Տաշեանի էջ* 45–82) ։ *Ատեն եղած է որ* 70 *օր կարգադրուած է մեծ պահքի համար՝ Առաջաւորաց պահքէն մինչեւ Զատիկ եւ յետոյ Կիւրեղ եպիսկոպոս երկու շաբաթը Բարեկենդանի վերածեր է (տե՛ս հին Այսմաւուրք էջ* 553 *տպ. ՌՃՀԹ) ։*

---

(1) Մեր Սուրբ Եկեղեցին Ս. հաղորդութեան տօն չունի. հին Օրացոյցներու մէջ տգիտօրէն ներմուծուած բան մ'էր այդպիսի տօն մը ։

Աւագ Հինգշաբթին Կիրակի է միւս Կիրակիներուն պէս ։

(2) Այս կերպը կ'յիշատակէ Ս. Օհան Օձնեցի Հայրապետը (Ըրդ դար) ։

**10. ԶԱՏԻԿ.** — Քրիստոսի Յարութեան օրը, որ մասնաւորապէս մեր մէջ Զատիկ գեղեցիկ կոչումն առած է։ Այս անունը կամ Հայոց հին հաւատքէն մնացած տօնի մը անուն է եւ կամ Գառնուկ, Ոչխար նշանակող անուն մը (տե՛ս Արեւելք 1893 Մարտ 26 Աւագ Ուրբաթի թիւը)։

Ինչ ալ ըլլայ Զատիկ բառի ծագումը, քրիստոնէական եկեղեցւոյ ամենէն մեծ տօնն է այդ եւ երբ Զատիկը լայն իմաստով՝ տօն ուրախութեան առնուի, կ՚ըսուի նաեւ մեծ Զատիկ (իսկ Ծնունդը ռամկօրէն պզտիկ Զատիկ)։ Զատիկը կը տօնուի ճիշդ քառասուն օր։ Այդ քառասուն օրերու բոլորն ալ Քրիստոսի Յարութեան նուիրուած են, բայց կիրակիները մասնաւորաբար յիշատակներ ունին քրիստոնէութեան նկատմամբ (1)։

**11. Ա. ԱՌԱՋԻՆ ԿԻՐԱԿԻՆ**, Զատիկը, Քրիստոսի Յարութեան տօնն է։

**Բ. ԵՐԿՐՈՐԴ ԿԻՐԱԿԻՆ** կոչուած է նաեւ Նոր կիրակի կամ կրկնազատիկ: Նոր կիրակի՝ որովհետեւ Քրիստոսի Յարութենէն յետոյ առաջին նոր կիրակի մ՚է Քրիստոնէութեան համար, որ սկսած էր տարածուիլ, աւետարանուիլ։ Կրկնազատիկ = Կրկին Զատիկ, երկու Զատիկ) կոչուած է, որովհետեւ արդէն Յարութեան՝ Զատկի՝ օր ըլլալով հանդերձ, Քրիստոնէութեան ալ նոր կիրակիին յիշատակը կը տօնուի այդ օրը։ Նոր կիրակին շատ լաւ երգած է Շնորհալի Հայրապետ իր «Նո-

(1) Զատկին սովորութիւն է կարմիր հաւկիթ ուտել վաղնջական սովորութեան համեմատ. շատ տեղ հաւկիթը կը ներկեն անպատճառ Աւագ Հինգշաբթի օր։

Բուն Բարեկենդանին սովորութիւն եղած է, վերջին ուտելիքն ընել խաշած հաւկիթը, կամ ինչպէս կըսեն՝ հաւկիթով կը կնքեն ուտիքի կերակուրներուն շարքը եւ Զատկին կը բակեն կնիքը կարմիր հաւկիթ ուտելով Ճրագալոյցին։

րոգեալ Կղզիք» Տարականին մէջ, որ այդ օրուան «Օրհնութիւնն» է ։

**Ծանօթ.** — Նոր Կիրակիի երկուշաբթիէն սկսեալ մինչեւ Հոգեգալուստ ամէն օր Ջուրս գլուխ Աւետարան կը կարդացուի սա կարգով.

Առտուն՝ Ղուկասէն
Ճաշուն՝ Յովհաննէսէն
Երեկոյեան առաջին՝ Մատթէոսէն
Երեկոյեան արձակումին՝ Մարկոսէն ։

Եւ գլուխները ա՛յնպէս մը բաժնուած են որ մինչեւ Հոգեգալուստին շաբաթը կը կարդացուին բոլոր աւետարանները մինչեւ չարչարանաց պատմութիւնը, եւ Տաթեւացին կ'ըսէ «լրումն է կարգի տնօրինականացն յարութեան եւ աւետարանացն» (Տօնացոյց) ։

**Գ. ԵՐՐՈՐԴ ԿԻՐԱԿԻՆ** կոչուած է Կանաչ[1] կիրակի կամ Աշխարհամատրան կիրակի.

Կանաչ կիրակի կոչումը չենք գիտեր թէ ինչ նախօսական բան մ'ունի. միայն փոխաբերաբար առնելով՝ կը հասկնանք Քրիստոնէութեան աճումն ու կանաչացումը ։ Եւ ճիշդ այս պատճառաւ ըսուած է Աշխարհամատրան կիրակի, որովհետեւ այդ օրն է որ կը տօնուի Քրիստոսի տնօրինական եւ Նոր կանաչած եկեղեցւոյն հաստատութեան յիշատակը ։ Այդ օրը շատ մեծ նշանակութիւն ունի եւ Հայոց եկեղեցին իւր լայն ոգիով Քրիստոնէական եկեղեցւոյ հաստատութեան կը նուիրէ զայն առանց ազգային կերպարանք մը տալու ։

---

[1] Կանաչ և Կարմիր կոչումները Տօնացոյցի մէջ նշանակուած չեն ։ Աւանդաբար եկած հասած են մեզ եւ կ'նշանակուին Օրացոյցներու մէջ ։

*Ո՛րչափ շինիչ է գիտնալ այս օրուան խորհրդաւորութիւնը ։ Երանի՜ թէ բոլոր եկեղեցիները գիտնային զայն ։ Աշխարհամատուռն, որ կը նշանակէ բոլոր Քրիստոնեայ հաւատացեալց մատուռը, եկեղեցիին՝ առաջին անգամ Երուսաղէմի մէջ նոյն իսկ Առաքելոց ձեռքով հաստատուած եկեղեցիին՝ տրուած անունն է, եւ այդ եկեղեցին բովանդակ Քրիստոնէութեան կը վերաբերէր, որովհետեւ դեռ չկային ազգային եկեղեցիներ ։*

**Դ. ԿԱՐՄԻՐ ԿԻՐԱԿԻ**. — *Այս կոչումը բանաստեղծական է եւ կը խորհրդաւորէ կարմիր Քրիստոսի ներկայութիւնը իր նորահաստատ եկեղեցւոյն մէջ ։ Ոմանք Կարմիր անուանեցին Նոր Կիրակին ալ ։ Ամէն պարագայի մէջ խաչի արեամբ ներկուած Քրիստոսի յատուկ յիշատակին տօնախմբութիւնն է ։*

*«Կարմիր անուանի*
*Օրս այս նազելի,*
*Զի Տէրն երեւի*
*Որպէս ի Զատկի*
*Օրըն Կիրակի.*
*Եւ այն զի կոչի*
*Կարմիր Կիրակի*
*Եւ յոյժ պատշաճի*
*Զի արեամբ ծաղկի»։*

(*Տես Հայկազեան Բառգիրք*)

**Ծանօթ**. — *Ընդհանրապէս խօսելով, Զատկի բոլոր կիրակիներն ալ Քրիստոսի եկեղեցւոյն հաստատութեան նուիրուած են, որովհետեւ այդ օրերուն մէջ քրիստոնէութեան ծագումն ու տարածումը կ՚պատմուի բոլոր ընթերցուածներով եւ կ՚երգուի շարականներով ։*

(*Եկեղեցւոյ յատուկ տօներու մասին տե՛ս վարը ։*)

**12. ԵՐԵՒՄԱՆ ԽԱՉ.** — *Զատկի հինգերորդ կիրակին՝ Երեւման խաչի նուիրուած է ։ Երեւման խաչ կը նշանակէ խաչին տեսնուիլը, որ տեղի ունեցած է Երուսաղէմի եկեղեցւոյն մէջ՝ Կիւրեղ եպիսկոպոսի ժամանակ եւ նոյն ինքն Կիւրեղն է որ այս Երեւումը գրի առած է նամակի ձեւով եւ հաղորդած է զայն իրեն ժամանակակից Կոստանդիանոս Բ. կայսեր* (337) ։ *Այս նամակը թարգմանուած է հայերէնի եւ կը կարդացուի Երեւման խաչի օր Անդաստանի ընթերցուածներու շարքին մէջ, Պօղոս Առաքեալի թղթէն առաջ եւ կ'սկսի «Թագաւորի Աստուածայինի» բառերով ։ Այս գրուածքը քիչ մը չոզոքորթական կ'գտնեն բանասէրք (հակառակ Կիւրեղի յայտարարութեան) եւ կ'խորհին որ գրած ըլլալու է Կոստանդիանոսը շահելու եւ ամրացնելու համար քրիստոնէութեան մէջ ։*

**13. ՀԱՄԲԱՐՁՈՒՄ.** — *Զատկէն* 40 *օր համբելով, վեցերորդ շաբթուն ճիշդ հինգշաբթի օրը՝ կ'տօնուի Քրիստոսի Համբարձումը Ձիթենեաց լեռնէն ։ Տարը օր կը տեւէ այս տօնը եւ տասներմէկերորդ օրը կը տօնուի Հոգեգալուստը ։*

**Ծանօթ.** — *Համբարձումը՝ հասարակօրէն Վիճակի օր ալ ըսուած է, պատճառը այն է որ Յուդայի տեղ մէկը ընտրելու համար Առաքեալները վիճակ ձգեցին երկու ընտրելիներու վրայ եւ Մատաթեայի ելաւ վիճակը. միւսն էր Յովսէփ Բարսաբայ Յուստոս (Գործք Ա. 26) ։*

*Վիճակի օր է նաեւ, որովհետեւ առաքեալներուն հետեւելով հայ-Քրիստոնեայ կանայք եւ աղջկունք իրենց բաղդին վիճակ կը ձգեն այն օրը մանաւոր երգերով, հանդէսով եւ ուրախութիւններով ։*

*Զատկէն–Համբարձում քառասուն օրերը ուտիք են*

բոլորովին, աղուհացի փոխարէն եւ մա՛նաւանդ Քրիստոսի այն խօսքին վրայ թէ ցո՛րչափ Փեսան (=Քրիստոս) իր աշակերտաց հետ է, անոնք չեն պահեր (Ղուկ. Ե. 34-35)։

Համբարձման ԵՇ օրուան անմիջապէս յաջորդող Ուրբաթէն կ'սկսին օրապահքերը։ Այնթապ՝ Թրքերէն եօղում ճիւմաա (=հաստ ուրբաթ) կ'անուանեն այդ օրը։ Պատճառը ինքնին կ'հասկցուի։

**14. ԵՐԿՐՈՐԴ ԾԱՂԿԱԶԱՐԴ.** — Զատկի եօթներորդ կիրակիին անունն է, որովհետեւ այդ օրը նոյնութեամբ կ'կրկնուին Ծաղկազարդի բոլոր ընթերցուածները ու շարականները։ Ասկէ զատ՝ ինչպէս որ Բուն Բարեկենդանէն մինչեւ Ծաղկազարդ քառասունք մըն է (ճիշտը 42 օր), նոյնպէս Զատիկէն մինչեւ եօթներորդ կիրակի քառասունք մըն է (ճիշտը 42)։

**15. ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏ** *կամ* **ՊԵՆՏԵԿՈՍՏԷ.** — Պենտէկոստէ կամ Պենտակոստէ (յունարէն Բենդիգօսդի՛) կը նշանակէ յիսներորդ, այսինքն՝ յիսուն օրերու վերջինը, զոր հրէայք կը հաշուէին սկսելով ա՛յն վերջի Զատկէն, զոր Եգիպտոսի մէջ ըրին եւ անմիջապէս ճամբայ ելան։ Եւ անկէ յետոյ Եգիպտոսի Զատկին յիշատակը յաւերժացնելու համար Պասեքին (Զատկին) յիսներորդ օրը կը տօնէին զայն։

Եւ որովհետեւ Հոգւոյն Գալուստը՝ այդ օրը տեղի ունեցաւ Քրիստոնէութեան մէջ, Պենտեկոստէ ըսելով Հոգեգալուստ հասկցուեցաւ։ Պենտեկոստէն հայացուցած են յինունք (=յիսուն օրեր) բառով, բառ մը որ շատ գործածական է եկեղեցւոյ մէջ։

Հոգեգալուստը պարզ է արդէն, կը նշանակէ Ս. Հոգիին գալը կամ իջնելը Առաքելոց վրայ։ Այս դէպքը

հրեղէն լեզուներով խորհրդաւորուած է ։ Եւ այս է պատճառը որ պատկերագրական արուեստը լեզուներու ձեւով բոցեր կը նկարէ Առաքելոց գլխուն վերեւ, հետեւելով Գործք Առաքելոցի պատմութեան ։

Հոգեգալուստը կ'նկարուի նաեւ աղաւնիով (խորհրդանշան Ս. Հոգւոյն), որ գլխի վայր սուր թռիչքով կ'վաղէ եւ իւր բերնէն կ'թափէ բոցեղէն լեզուներ ։ Իմ ձեռագիր մէկ տօնացոյցի լուսանցքին վրայ այսպէս նկարուած է ոսկեզօծ ։

Ս. Ներսէս Շնորհալի Հայրապետը կարգադրեց որ եօթնօրեայ հանդէսով տօնախմբուի Ս. Հոգւոյն գալուստը եւ այս առթիւ յօրինեց Հոգեգալստեան գեղեցիկ շարականները եւ տօնախմբութեան հինգ օրերն ալ պահք ըրաւ «անլուծանելի» ։ Այս շաբաթապահքը Եղիական կ'ըսուի, որովհետեւ Հոգեգալուստէն յետոյ հանդիպող առաջին կիրակի օրը, Եղիա Մարգարէին (Դ. Թգ. Գլ. Ա–Ե) յիշատակը կ'կատարուի ։

Այս տօնի շարականներու եւ ընթերցուածներու ճոխացումին արդիւնքն է որ Լամբրոնացին ալ «Ստիպիմք ի սիրոյ» երկար աղօթքը կարգադրուած է կարդացուիլ ։ Ես ունիմ Ձեռագիր երկու Տօնացոյց, որոնց մէջ Օհան Ոսկեբերանի երեք աղօթքները, որ առտուն պատարագի ժամուն կը կարդացուին այժմ, երեկոյեան թողուած են «Ստիպիմք»էն առաջ ։ 1722ին «ի տպարանի Պարոն Կարապետի որդի Տրուպ Աստուրի» տպագրուած Ճաշոցի մէջ ալ հրահանգ կը տրուի որ Ոսկեբերանի երեք աղօթքները երեկոյեան կարդացուին, այսինքն՝ «Հայր Գթած»էն յետոյ Աւետարան մը, յետոյ երեք աղօթքները եւ յետոյ Լամբրոնացիինը ։

Այդ երկու Ձեռագիր Տօնացոյցներուն համեմատ, «Բայց են ոմանք որ յառաջ քան զԽոնարհեցան կարդան զաղօթքն ի Թաբորն եւ ապա սկսանին Խոնար-

հեցո Ապրեցո, կամք քո է։ Եւ աւարտ աղօթիցն եւ գրոցն թէ յիշատակարան լինի կարդան։ Բայց ննջեցելոց չարական ասեն, Սղ. Երանի ում թող. Աւետարան հանգստեան. զկնի Հոգւոցն հանգուցելոց, Քրիստոս որդի, Հայր մեր որ յերկինս, եւ արձակեն եւլն։ Սահմանեաց Ս. Ներսէս զի Համբարձմանէն մինչեւ զՊենտեկոստէն պահեսցեն եւ թէ՝ ծանր թուեսցի պահել զբովանդակն, զԴշ. եւ զՈւրբ. պահեսցեն։»

Ունիմ ուրիշ Ձեռագիր Տօնացոյց մը, զոր ես ձեռքովս ընդօրինակեցի Ստեփանոս Գոյներ Երիցանցի ինքնագիր Տօնացոյցէն, որուն մէջ Լամբրոնացիին «Ստիպիմք ի սիրոյ» աղօթքը չկայ դեռ։ Գոյներ երիցանց մինչեւ 1310–12 կ'յիշատակուի պատմութեան մէջ, Շնորհալիէն գրեթէ երկու դար յետոյ։ Այնպէս որ Գոյներ Երիցանց իւր Տօնացոյցին մէջ ո՛ եւ է յիշատակութիւն չըներ Շնորհալիի կարգադրած «անլուծանելի» պահոց մասին, ո՛չ ալ Հոգեգալուստին յաջորդող Առաջին կիրակին Եղիա մարգարէի յիշատակը կընէ։ Այդ կիրակիին ընթեցուածներն ու երգերը բոլորովին «Եկեղեցւոյ» են տարբեր հիմակուան Տօնացոյցի այդ օրուան համար նշանակածներէն։ Գոյներ Երիցանց այդ կիրակին կ'անուանէ «Բարկենդան առաջին աղուհացից:»

Աւելորդ չենք համարիր յառաջ բերել Գոյներ Երիցանցի Տօնացոյցին կարգադրութիւնը։

Առաւօտուն Անդաստանէն յետոյ, կ'յաւելու. «Եւ աւրհնեն Անդաստանն եւ զԱշխարհս եւ երթան ի գերեզմանն. Տրկն. Ղազարու եւ Հանգստեան. աղօթք, Քրիստոսի որդի Աստուծոյ եւ գան ի դո՛ւռն պաշտելով կցորդ կամ Տրկն. Քրզ. Խնդր. Աղթք. Քում ամենազօր։»

Երեկոյին՝ առաւօտեան գիրք Աւետարան. «Եւ Տեառնագրեն զԱնդաստանն եւ ի դառնալն սկսանին Խոնարհեցո եւ Ապրեցո՛» եւայլն։ Հայր Գթածէն յետոյ,

Սղմ. Աւետարան։ Զկնի Աւետարանին Ճրկն. Դ.Զ. Առաքելոյ աղաւնոյ, երիս տունս ասա՛, Քրզ. եւ եւս խաղաղութեան, աղօթք հանդերձ ծունր դնելով, եւ այս կարգան զաղաւթս զմր ասացեալ է սրբոյն Յովհաննու Ոսկեբերանին ի Սուրբ Երրորդութիւնն, Ամենակալ անարատ Աստուած։» Ճիշդ հիմակուան Տօնացոյցի կարգադրութեամբ կը շարունակուի եւ կ'յաւելու «Յաւարտ աղաւթիցն թէ յիշատակարան լինի կարգան։ Եւ ննջեցելոց Ճրկն. Սղմ. Երանի՛ ում թողութիւն, Աղ. Քրիստոս որդի Աստուծոյ . . .»։

Գտնլով Հոգեգալուստին յաջորդող առաջին կիրակիին, Գոյներ Երիցանց կ'ըսէ «Կիրակի տօն է անպատճառ Ս. Հոգւոյն զոր կամիս ի յանցեալ աւուրցդ ասա նոյնպէս զալելուքն» եւայլն. եւ յետոյ՝

«Ո՛վ տաւնասէր եւ Աստուածասէր թէ կամիս տօնել Ս. Հոգւոյն խրատովդ, գրեցաւ որպէս էր Գէորգեայն Վարդապետի։ Այլ զկիրակէս զայս յետ հոգւոյ գալստեանն, ես նուաստ գրիչս՝ Ստեփաննոս, մականուն Գոյներ Երիցանց, ուխտ եւ տասն ամ կացի առ ոտս սուրբ վարդապետին մեծին Գէորգեա Լամբրանացւոյ եւ կարի հարուստ լուեալ եմ ի նմանէ, ունիմ եւ իւր ձեռացն գիր վասն կիրակիին, որ մեր Ս. Լուսաւորիչն Սուրբն. Գրիգոր յայս կիւրակէս Եկեղեցւոյ տաւն է կարգել, Ա.հ. Գ.ձ. Ուրախ լեր սուրբ։ Հ. Այսաւր պայծառ. իւր սարաւք, եւ այս շարականն իւրն իսկ արարեալ է յոր եկն Ուրատակէս որդի իւր ի ժողովոյն Նիկիոյ-վանորոյ եւ յիշէ՝ Կեցո՛ զորդի ծառայի (1)։ Արդ եթէ

(1) Գոյներ Երիցանց և նոյն իսկ Գէորգ Լամբրոնացին, կը սխալին՝ «Կեցո՛ զորդի ծառայի քո», շարականը Լուսաւորչին վերագրելով։ Հաւասարապէս կը սխալին Ս. Սահակի վերագրողներն ալ։ Լուսաւորիչ՝ հայ գրերու գիւտէն յառաջ ոչ կրնար գրել և ոչ ալ կրնար երգել այդպիսի շարական մը։ Իսկ Ս. Սահակի վերագրել, պատմականապէս սխալ

*Եկեղեցւոյ տաւնես. Դու զեկեղեցւոյ կարգն կատարէ»։*

*«Եւ դարձեալ եթէ ոչ կամիս զհոգւոյ պալատեան տաւնին ութաւրէիցն զաւրն ի լման տաւնել, դու զգիշերն տաւնէ՛։ Եւ ի ճաշոյն ի վեր զպահոցն կարգն կատարէ՛։ Եւ այլ թէ խստապարանիս եւ ոչ կամիս զութ աւուրն, դու սկիզբն արա՛ ապաշխարութեան հարցներոյն»։*

**16. ՏՕՆ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍՐԲՈՅ ԷՋՄԻԱԾՆԻ.**— *Հոգեգալուստէն ետքը, երկրորդ կիրակին, կը տօնուի Հայոց Առաջին Եկեղեցւոյն հիմնարկութիւնը Էջմիածնի մէջ, Ս. Գրիգոր Լուսաւորչի ձեռքով։ Այս տօնը շատ մեծ նշանակութիւն ունի ո՛չ միայն Հայոց եկեղեցական պատմութեան մէջ, այլ նաեւ բովանդակ քրիստոնէական Եկեղեցւոյ պատմութեան մէջ։ Հայոց Եկեղեցին՝ Արեւելեան Քրիստոնէութեան ամենէն հին եւ ամենէն հաւատարիմ հաստատութիւններէն է։ Հայոց Եկեղեցին Քրիստոնէութիւնը պահպանած և տարածած է իր շրջակայքը։*

*Ս. Գրիգոր Լուսաւորչի խանդավառ գործունէութիւնը, որ վերջապէս Եկեղեցիներու շինութիւններով ալ իր նպատակին կը հասնէր, Էջմիածնի Կաթուղիկէին հիմնարկութեան տարեդարձին հետ կը փառաւորուի դարերէ ի վեր։*

*Դիտելու է որ այս Կիրակին կանխող շաբաթ օրն ալ*

---

է. իրաւ՝ այդ Շարականը Սահակ մ՚է երգողը. բայց Սահակ Գ. Ձորափորեցին (677—703) հաւանաբար 685ի ատենները, Աշոտ Պատրիկի՝ Դարիւնից մէջ վերանորոգած եկեղեցւոյ նաւակատիքին առթիւ։ Որովհետև Աշոտն է որ պատրիկութեամբ վերապատուեցաւ Նոր Հռովմայ (=Կ. Պոլսի) կայսրէն։ Ս. Ներսէս Լամբրոնացին ալ կ՚յիշէ «Կեցո զորդիս», երգը և անոր մէջ յիշուած Հռովմով կ՚հասկնայ՝ Կ. Պոլիսը (Լամբրոնացի էջ 230)։ Տես նաև Տ. Տ. Մաղաքիա Ս. Պատրիարքի 1899 մայիս 24 Թուակիր և 129 Թիւ հռչակաւոր Կոնդակը։

նուիրուած է Ս. Գրիգոր Լուսաւորչի «Երանելոյն ի վիրապէն» :

**Ծանօթ.** — Էջմիածնի մէջ տեղական շքեղ հանդէսներ ալ կ'կատարուին այդ օր : Պատարագէն ետքը հայրապետական մաղթանքներ կ'ըսուին հանդիսաւորապէս : Իսկ գիշերը լուսավառութիւններ կ'ըլլան Էջմիածնի Տաճարին և Ճեմարանի գաւիթներուն մէջ .

**17. ԳԻՒՏ ՆՇԽԱՐԱՑ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ**. — Հոգւոյն գալստեան Գրդ կիրակին բարեկենդան է եւ շաբաթ օր կը տօնուի մեր Ս. Գրիգոր Լուսաւորչի նշխարաց գիւտը : Այս շաբաթը թէեւ պահք է, բայց տօներ կը կատարուին : Լուսաւորչի համար կը պատմուի թէ իր ծերութեան օրերը բոլորովին առանձնութեան մէջ անցնելու համար կաթողիկոսական աթոռը յանձնեց իր Արիստակէս որդւոյն եւ ինքն քաշուեցաւ Սեպուհ լերան վրայ, շատ քիչ անգամ իջնելով քաղաքը : Նա վախճանեցաւ լերան վրայ իբր միայնակեաց՝ ծառի մը (ըստ Համշէնցւոց աւանդութեան Գիհի = Արտըճ) փորոցին մէջ, եւ հովիւ մը պատահմամբ, գտաւ անոր անշնչացած մարմինը եւ հռչակեց : Ահա այս դէպքն է որ **Գիւտ Նշխարաց** կ'ըսուի եւ Լուսաւորչի ամենէն մեծ տօնն է Եկեղեցւոյ համար, որովհետեւ շաբաթապահքով կ'պատրաստուի Եկեղեցին տօնելու իր Լուսաւորչին վախճանը, Գիւտ Նշխարաց անուան տակ :

Սեպուհ լերան վրայ յետոյ շինուեցաւ Ս. Լուսաւորչի անուամբ եկեղեցի մը, ուր մեծ հանդէսով կը տօնուէր Լուսաւորչին այդ տօնը : Պլուզ կոչուած Յովհաննէս գիտական վարդապետը (որ Շնորհալիի՝ Մատթէոս Աւետարանչի վրայ գրած եւ պակաս թողած մեկնութիւնը ԺԲրդ Գլխէն շարունակեց եւ լրացուց) «Լերինք ամենայն ցնծացեն» հոգեշունչ շարականը երգած

*է ։ Պղուզ այդ առթիւ ուրիշ ներբողներ ալ յօրինած է Լուսաւորչի համար ։*

**18. ԳԻՒՏ ՏՓՈՑ.** — *Տիրամօր յիշատակը փառաւորելու համար՝ Եկեղեցին Աստուածածնի անուան եօթը տօներ հաստատած է այլ եւ այլ ժամանակներ ։*

*Այդ տօներէն մին է Աստուածածնի Տուփին կամ սնտուկին գիւտը (= գտնուիլը) ։ Կը պատմուի թէ երկու Պոլսեցի պալատական եղբայրներ, Արիոսեան հերձուածէն, քրիստոնեայ կ՚ըլլան եւ Սուրբ Երկիր կ՚երթան ուխտի ։ Գալիլեայի սահմաններուն վրայ՝ հրեայ այրի կնոջ մը տան դրան առջեւ կը տեսնեն շատ մը հիւանդներ ու հաշմանդամներ ու ներս մտնելով կը հասկնան որ ուխտատեղի մը շինած է հրեայ կինը իր տանը՝ Աստուածածնի գլխագիրը (= լաչակը) պարունակող սնտուկը, մոմերու, ջահերու, եւ խունկերու մէջ մեծարելով ։ Երկու եղբայրներ կ՚շարունակեն իրենց ճամբան դէպ ի Երուսաղէմ եւ կ՚խորհին իրենց վերադարձին վերցնել այդ սնտուկը, հրեայ ջատուկին տունէն . ատոր համար ճիշդ այդ սնտուկի չափով գեղեցիկ սնտուկ մը շինել կուտան, ոսկեթել ծածկոցով մը . կ՚վերադառնան հրեայ կնոջ գտնուած տեղը . գիշերանց՝ Աստուածածնի տուփն (= Սնտուկը) իւր մէջի աւանդովը միասին կուտան իրենց ծառաներուն եւ ճամբայ կը հանեն ։ Վերցուած սնտուկին տեղ կը դնեն իրենց շինել տուածը եւ առաւօտուն՝ իրենք ալ կը մեկնին ։*

*Իրողութիւնը՝ Պոլիս հասնելու մօտ՝ կ՚իմացնեն Լեւոն կայսեր, որ մեծ հանդէսով կ՚հրամայէ ընդունիլ եւ կը կարգադրեն Յունիս 2ին տօն կատարել ամէն տարի ։*

*Մեր եկեղեցին կը կատարէ զայն Հոգեգալստեան Երդ կիրակին ։ Այս է Գիւտ Տփոյ ըսուած տօնը ։*

**19. ՎԱՐԴԱՎԱՌ.** — *Քրիստոսի պայծառակերպութեան տօնը, Աւետարանի պատմութեան համեմատ: Վարդավառը Հայոց հին հաւատքէն մնացորդ մըն է իբր տօն հայ-հեթանոսութեան դիցուհիներէն ո՛ եւ է մէկուն, զոր օր. Ոսկեծին կամ Ոսկեծղի Անահիտի ու վարդամատն Աստղկան:*

*Քրիստոնէական եկեղեցին փոխեց ա՛յդ տօնը Քրիստոսի ամենէն հրաշափայլ մէկ տօնին՝ Այլակերպութեան, լաւ եւս, պայծառակերպութեան հետ. եւ վարդավառը համեմատեց Քրիստոսի թէ իբր կարմիր վարդ եւ թէ իբր ճերմակ վարդ փայլումը Սուրբ լերան վրայ:*

*Հոգեգալստեան վեցերորդ կիւրակին՝ բարեկենդան է Վարդավառի եւ շաբաթապահքէ յետոյ կը տօնուի վարդավառը մեծ հանդէսով:*

*Հայ-հեթանոսական նշմարներ մնացեր են Վարդավառէն: Այդ տօնի առթիւ դեռ շատեր ջուր կը սրսկեն իրարու վրայ, երբեմն վարդեջուր կը սրսկէին, աղաւնի կը թռցնէին: Այժմ մի միայն ջուրի սրսկումը մնացեր է, եւ այն իբր զուարճութիւն մանուկներուն:*

*Այս բոլորի մասին տե՛ս կրօնաթերթ Մասիսի «Վարդավառի յատուկ» թերթը* (*ԽԵ. տարի*, 30 *Յունիս* 1896 *թիւ* 5: *Տե՛ս նաեւ* Բիւզանդիոն *թիւ* 523):

**20. ՇՈՂԱԿԱԹ.** — *Ս. Լուսաւորչի Տեսլեան համեմատ Միածնին իջումով հայ-քրիստոնէութեան առաջին Եկեղեցւոյ Տեղւոյն վրայ լոյս ու շող կաթեցաւ եւ Լուսաւորիչ հո՛ն հիմնեց առաջին Եկեղեցին: Էջմիածին, Լուսակաթ, կամ Շողակաթ սրբուն կոչումին տակ կը տօնուի Հայոց առաջին Եկեղեցւոյ հիմնարկութեան տօնը, հաստատապէս Աստուածածնի վերափոխման Շաբաթ օրը, որուն յաջորդ օրը՝ կիրակին՝ վերափոխումը կ՛տօնուի:*

Ծողակաթի եւ Տօն Կաթուղիկէ Եկեղեցւոյ Էջմիածնի տօները միեւնոյն սկզբունքը եւ միեւնոյն նպատակը ունին ։

**21. ՎԵՐԱՓՈԽՈՒՄ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ.**—*Տիրամօր նուիրուած ամենէն մեծ եւ ամենէն հանդիսաւոր տօնն է որ կ'կատարուի, ինչպէս ըսինք վերեւ (էջ 11) Օգոստոսի 12–17 օրերուն մէջ պատահող կիրակին ։ Տիրամօր ննջումին եւ երկինք փոխուելուն տօնն է ա՛յդ, որ Բարեկենդան ունի, հետեւաբար եւ Շաբաթապահք ։ Այս տօնը Շնորհալի Հայրապետ իննօրեայ հանդէսով փառաւորեց ։ Այս տօնի մասին երկար գրած ենք Բիւզանդիոնի մէջ (Տե՛ս թիւ 552, 553) ։*

**22. ԳԻՒՏ ԳՕՏԻՈՅ.** — *Տիրամօր նուիրուած տօներէն մին ալ անոր գօտիին գիւտն է, որու մասին մեր Այսմաւուրքին մէջ խիստ երկար պատմութեան տեղ՝ երկար ներբող մը նուիրուած է Տիրամօր ։ Մանրամասնութիւնք կը պակսին ։ Սաչափը յայտնի է թէ Աստուածածնի գօտին կ'գտնուէր Երուսաղէմի մէջ եւ Կ. Պոլիս կ'փոխադրուի, մեծ հանդէսներ կ'սարքուին, եւ այս առթիւ Ս. Աստուածածին անուանով եկեղեցի մ'ալ կը շինուի, ամէն տարի, Օգոստոս 31ին, տօնելու պայմանով ։ Մեր եկեղեցին Աստուածածնի Գ.րդ կիրակին կը տօնէ «Գիւտ Գօտւոյն» ։*

**23. ԽԱՉՎԵՐԱՑ.** — *Խաչեալ Քրիստոսի խաչին վերացման կամ բարձրացման առթիւ կատարուած քրիստոնէական ամենէն մեծ տօնն է՝ բոլոր քրիստոնէական հին եկեղեցիներուն համար ։ Ունի Բարեկենդան եւ Շաբաթապահք ։ Սեպտ. 14ին կը տօնուի ծագումով, բայց մեր եկեղեցին կը տօնէ Սեպտ. 11—17 օրերուն մէջ*

հանդիպող կիրակին ։ Տօնը ութօրեայ է Ծնունդի պէս ։ Խաչվերաց կամ Խաչվերայ կը նշանակէ խաչին վերացումը կամ բարձրացումը , որու մասին պանազան խորհրդածութիւններ կան , ինչպէս խաչի գիւտին կամ Մեծն Կոստանդիանոսի տեսած խաչին բարձրացումը կամ խաչին՝ գերեդարձին առթիւ եղած բարձրացումը ։ Խաչը առեն մը գերի ընկաւ Պարսից ձեռքը ․ Հերակլ կայսրը (610—641) յաղթապէս պատերազմ հրատարակեց Պարսից դէմ , յաղթեց , ազատեց խաչը եւ փառաւոր հանդէսով Պոլիս տարաւ ։ Խաչին գերեդարձը մեծ օր մ'եղաւ բոլոր քրիստոնեայ եկեղեցիներու համար ։ Բնական է որ Խաչվերացը՝ աւելի հին պատմութեամբ , կը կապուի Մեծն Կոստանդիանոսին , Գողգոթայի եւ Սուրբ գերեզմանի վրայ շինել տուած եկեղեցիներուն (իր մօր Հեղինէի ձեռքով) բուն խաչի գիւտի յիշատակն ալ միացնելով ։ Զօրաւոր պարուն՝ Տիւրոսի Սիւնհոդոսը նուիրագործեց Կոստանդիանոսեան եկեղեցիներու տարեդարձն ու Խաչի Տօները ։ Իբր բնիկ տօն՝ Երուսաղէմի մէջ մեծ հանդէսով կը կատարուէր ։ Երուսաղէմէն Պոլիս անցաւ եւ Պոլսէն Հռոմ՝ Եօթներորդ դարուն մէջ։ Խաչի գերեդարձին առթիւ եւ միեւնոյն առեն , ինչպէս Հայոց նոյնպէս բոլոր Քրիստոնեայ եկեղեցիներու համար ամենէն մեծ տօներէն մին եղաւ Խաչվերացը ։ Խաչվերացի առթիւ է որ մեր եկեղեցին իւր ամենէն հանդիսաւոր Թափորը եւ վերջին անդաստանը կ'ընէ ։ Խաչի առթիւ երգուած բոլոր շարականները սքանչելի են եւ շարականական մատենագրութեան գոհարներն են թէ՛ ներշնչումի եւ թէ՛ գրական տեսակէտներով ։

**24․ ՏՕՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ․** — Եկեղեցին ալ ունի իրեն սեփական տօներն , որոնց նպատակն է Եկեղեցւոյ բարերար հիմնարկութիւնը չեշտել ։ Եկեղեցւոյ տօները

սերտ կապ մ'ունին խաչի տօներուն հետ ։ Որովհետեւ Քրիստոսի մահը խաչի վրայ՝ հաստատութիւնն է եկեղեցւոյ, այնպէս որ խաչն ու եկեղեցին իրենց ամենէն բարձր իմաստով կը տօնուին հանդիսաւորապէս. այսինքն՝ ոչ թէ խաչին նիւթը կամ եկեղեցւոյն նիւթական շէնքը, այլ բուն իսկ խաչն ու եկեղեցին իրենց վերացեալ իմաստով ։ Քրիստոսի մահուամբ իւր եկեղեցին հաստատուեցաւ ։

Վերացման խաչի տօնական օրերը գիրկընդխառն կարգադրութեան մը համեմատ կ'փառաւորուին ։

Խաչվերացի պահքին բուն շաբաթ օրը Տօն Եկեղեցւոյ է արդէն եւ մնացածները սա կարգով են.

Առաջին կիրակի Տօն խաչի (= Խաչվերացի).

ԲՇ. Տօն Խաչի
ԳՇ. Տօն Եկեղեցւոյ
ԴՇ. Տօն Եկեղեցւոյ
ԵՇ. Տօն եկեղեցւոյ
Ուր. Տօն Խաչի
ՇԲ. Տօն Խաչի ։

Ինչպէս կը տեսնուի, նաւակատիք շաբաթ օրն ալ միասին առնելով, Չորս օր Եկեղեցւոյ եւ Չորս օր ալ Խաչի տօն է. ուրիշ խօսքով ութ օրէքին կէսը Խաչի տօն է եւ կէսը՝ Եկեղեցւոյ ։

**25. ՎԱՐԱԳԱՅ ԽԱՉ։** — Վերացման խաչի երրորդ կիրակին կը տօնուի հաստատապէս խաչի ուրիշ տօն մը, որ մեր եկեղեցւոյն յատուկ է ։ Վարագայ խաչի տօնն ունի Բարեկենդան եւ Շաբաթապահք ։ Վարագ՝ Վանի մօտ՝ լերան մ'անունն է, որուն բլուրներէն մին կը կոչուի Գաղիղեա, ուր կը պատմուի թէ Կոյսն Հռիփսիմէ ապաստանեցաւ իւր ընկերուհիներուն հետ եւ

*Հռիփսիմէ, որ իր վիզէն կախ տուած էր կենաց փայտէն շինուած խաչ մը Հռովմէն հալածուելու ատեն, զանի իր հալածիչներուն ձեռքը չտալու համար ծածկած է այդ լերան մէջ։ Հայք երկար ատեն այդ աւանդութիւնը հաստատ պահեցին։ Թոթիկ անուն ճգնաւոր մը եւ իր Յովէլ աշակերտը, այդ աւանդութեամբ առաջնորդուած կը փնտռէին խաչը եւ իրենց տեսիլներուն վրայ կը գտնուի խաչը ու կը դրուի Վարագայ Եկեղեցւոյն մէջ։ Ժամանակին Կաթողիկոսը՝ Ներսէս Շինող* (640—661) *այս առթիւ փառաւոր հանդէսով կը տօնէ խաչին յիշատակը եւ կ'կարգադրէ որ տօնուի ամէն տարի Մեհեկան ամսուն երկուքին։ Եւ որովհետեւ Թոթիկի տեսիլքին համեմատ՝ լուսեղէն* 12 *սիւներու վրայ հանգչած էր խաչը, Վարագը կ'զարդարուի* 12 *նոր եկեղեցիներով։ Իսկ Հին եկեղեցին, ո՛ւր այդ* 12 *լոյս սիւները փայլած էին, կը նորոգուի եւ կ'կոչուի Ս. Նշան եւ կ'դառնայ ուխտատեղի մը ա՛յդ կողմերուն համար։*

**26. ԳԻՒՏ—ԽԱՉ.** — *Քրիստոսի խաչափայտին գտնուելուն առթիւ հաստատուած տօնն է, որ կը կատարուի Խաչվերացի եօթներորդ կիրակին հաստատապէս։*

*Քրիստոսի խաչափայտին գիւտին նկատմամբ պատմութիւնները՝ դէպքերը՝ նոյն են, բաց ի պատմութեան մէջ գործող դէմքերէն։ Որովհետեւ ոմանք Կղոդիոս Բ. կայսեր* (268–270) *կնոջ Պատրոնիկէ թագուհիին եւ ոմանք ալ Մեծն Կոստանդիանոսի* (306–337) *մօր՝ Հեղինէ թագուհիին՝ վերագրեցին խաչին գիւտը։ Կարծես իրարմէ ընդօրինակուած պատմութիւն մըն է այդ։ Իսկ այս պատմութեան նիւթը ծանօթ պէտք է ըլլայ շատերուն, մանաւանդ ծեր հաւատացելոց, որոնք լսած ըլլալու են Այսմաւուրքի ընթերցուածը՝ Գիւտ խաչի տօնին առթիւ։*

*Բուն պատմութեան տարբերքը ասոնք են* 1. *Թա-*

գուհրին փափաք կ'ունենայ Քրիստոսի խաչը գտնելու. 2. Այս նպատակով Երուսաղէմ ուխտի կ'երթայ. 3. Գողգոթայի տեղը, բանի ուժով որոշել կուտայ («Եւ խաչտանգեալ պղտոր Հրէից» Շարականի բացատրութեամբ). 4. Պեղումը կը կատարուի եւ երեք խաչեր, Յիսուսի եւ երկու աւազակաց, կը գտնուին. 5. Քրիստոսի խաչը երեքին մէջէն զատելու համար ննջեցեալի մը կը դնեն զանոնք կարգաւ եւ ննջեցեալի յարութեամբը կ'որոշուի Քրիստոսի խաչը։

**27. ԵՕԹՆ ՇԱԲԱԹՔ.** — *Վարագայ խաչէն համրելով մինչեւ գիւտ խաչ եղած եօթը շաբաթներ, որոնց մէջ հարսանիք կ'ըլլայ եւ որ եւ է պատճառով չխափանիր։*

**28. ՅԻՍՆԱԿ.** — *Յիսնակ ըսուած է այն յիսուն օրերուն, որ Նոյեմբեր 18էն հաշուելով մինչեւ Յունուար 6 կը հասնին։ Երբեմն այս յիսնակը (յիսուն օրեր) բոլորովին պահք էր. ասոր ապացոյցն, որ մնացեր է ցարդ, Բարեկենդանն ու Շաբաթապահքն է։ Գիտենք որ բարեկենդանը մեծ տօներու համար կ'ըլլայ։ Ընդհակառակն Յիսնակի բարեկենդանին անմիջապէս մեծ տօն մը չյաջորդէր։ Ասի կը ցուցնէ թէ ինչպէս որ Բուն բարեկենդանին կը յաջորդէ պահոց յիսնակ մը եւ անմիջապէս Զատիկը կը տօնուի, այսպէս ալ երբեմն յիսուն օր կը պահուէր եւ Ծնունդը կը տօնուէր։ Յիսնակի պահքերը բոլորովին վերցուած չեն. որովհետեւ յիսուն օրերը երեք մասի բաժնուելով, մէկ մէկ շաբաթապաքի վերածուեր է. առաջինը Յիսնակաց շաբաթապահքը, երկրորդը՝ Յ. Յակոբայ շաբաթապահքը, երրորդը՝ Ծննդեան շաբաթապահքը։*

*= Յիսնակամուտ՝ կը նշանակէ յիսնակի պահոց մտնելու օրը, որ է Յիսնակի Բարեկենդանին գիշերը։*

**ԻԹ. ԱՒԱԳ ՏՕՆՔ.** — *Այն չորս տօները, որ կը կատարուին Ծննդեան շաբաթապահքը կանխող շաբթուն չորս տօնական օրերուն մէջ, կ'ըսուին Աւագ Տօներ։*

*Աւագ (=մեծ) ըսուած են չորս զոյգ Տօներ, որովհետեւ նշանաւոր անձնաւորութիւններու յիշատակը իրարու յաջորդելով իբր «բազմօրեայ» տօնախմբութիւն՝ նախապատրաստութիւնը կը կազմեն Փրկչի Ծննդեան տօնին, որ Աւագ տօներու Աւագն է*(1)։

**Առաջին Տօն.** — *Սրբոյն Դաւթի մարգարէին եւ Յակոբայ Առաքելոյն.*
**Երկրորդ Տօն.** — *Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ առաջին մարտիրոսին.*
**Երրորդ Տօն.** — *Սրբոց Առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի.*
**Չորրորդ Տօն.** — *Սրբոց Որդւոցն Որոտման Յակոբայ Առաքելոյն եւ Յովհաննու Աւետարանչին։*

*Աւագ տօները շատ կանուխ ժամանակէն կարգադրուած են։ Ս. Բարսեղ Կեսարացի անոր յիշատակութիւնը կ'ընէ* (379). *ըստ Նիւսացի Ս. Գրիգորին՝ Աւագ տօները սովորութիւն էր Ծնունդէն յետոյ տօնել։*

*Դեռ այժմ Յոյնք եւ Լատինք, զոր օրինակ. Ս. Ստեփաննոսը կը տօնեն Ծննդեան Բ. օրը, շատ հաւանական է որ մեր եկեղեցին ալ այնպէս ըրած ըլլայ ի սկզբան. որովհետեւ Ստեփաննոսի գիրքը գոնէ չէ՛ վերցուած եւ Ծննդեան Բ. օրը կը կարդացուի Ճաշուին։*

*Աւելցնենք որ Ս. Ստեփաննոսի տօնը* 415*էն (իւր գերեզմանին գտնուելուն թուականը) շատ յառաջ կար եւ այդ թուականին աւելի եւս փառաւորուեցաւ։*

---

(1) *Քրիստոսի Ծննդեան Տօնը ինչպէս որ խումբ մը Աւագ Տօներով կը կանխուի, այնպէս ալ, ինչպէս տեսանք վերև, Զատիկը կը կանխուի Աւագ Շաբաթով մը։*

*Աւագ տօներու տօնելիներուն մասին տե՛ս ԱՐԵՒԵԼՔի «Աւագ Տօներու Աւագ դէմքերը» խորագրին տակ գրուած մեր յօդուածները (Արեւելք* 1895 *Դեկտ.* 23, 25, 26, 28)։

**Ծանօթ.** — *ՏՕՆԱԿԱՆ ՄԵԾ ՕՐԵՐ խորագրին տակ՝ չուզեցինք ուրիշ տօներու եւ օրերու մասին ալ խօսիլ ։ Գրքոյկս իր տօնացուցական շրջանակէն դուրս պիտի ելլէր ա՛յն ատեն ։*



# "ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ,,

# ԺԱՄԵՐԸ

*Տօնացոյցի բոլոր կարգաւորութիւնը «հասարակաց», այսինքն՝ ընդհանուրին, ժողովրդեան, համար շինուած է ։ Առանձնական հրահանգ մը չկայ Տօնացոյցին մէջ ։*

*Բնական է որ եկեղեցիի մը կատարեալ կազմակերպութեան նշանն է, այդ եկեղեցիին ժամերգութեան, արարողութեան եւայլն, ժամերուն ու ժամանակներուն որոշուած ըլլալը՝ ընդհանուր եւ տիրող կարգապահութեան մը համեմատ ։*

*Նախնիք այս կարեւոր կէտը նկատի առած են կանուխ ժամանակէն ։ Եւ ամենէն յառաջ ընդունած են օրուան 24 ժամերը եօթը մասերու բաժնել եւ ա՛յդ եօթը մասերուն համար առանձին առանձին պաշտամունք կարգադրել ։*

*7 թիւը սկիզբէն ի վեր խորհրդաւոր նկատուած է, եւ անկէ զատ եբրայական սովորութեան համեմատ ալ օրը եօթը անգամ օրհնութիւն պիտի մատուցուէր Եհովային ։ Զայս կը հաստատէ Սաղմոսի մէջ՝ Դաւթի «Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ» բացատրութիւնը ։*

*Եօթը բաժանումները որոշ կերպով նշանակուած են մեր եկեղեցւոյ «Հասարակաց աղօթից» գիրքին, այսինքն՝ Ժամագիրքին մէջ ։*

*Ա. — Գիշերապաշտօն, որ գիշերուան ժամերգութեան սկսուածէն կ'տեւէ մինչեւ «Հարց»ը ։ Այս մասը ժամագիրքին մէջ այսպէս նշանակուած է.*

«Կարգաւորութիւն հասարակաց աղօթից Հայ. Եկեղեցւոյ, որ կատարի ի մէջ գիշերի ի դէմս Հօր Աստուծոյ»։

Բ. — Առաւօտեան, որ «Հարց»էն կ'սկսի եւ կ'տեւէ մինչեւ Առաջին ժամ կամ Արեւագալ։

Այս երկրորդ մասը, ժամագիրքի բացատրութեամբ է.

«Կարգաւորութիւն Հասարակաց Աղօթից Առաւօտու ժամուն. որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ, որ երեւեցաւ Իւղաբերից։

Գ. — Արեւագալ, որ արեւու ծագումէն մինչեւ օրուան երրորդ ժամը կամ ճաշուն, ժամագրքի համեմատ.

«Կարգաւորութիւն հասարակաց աղօթից արեւագալի ժամուն, որ կատարի ի դէմս Հոգւոյն Սրբոյ, այլեւ ի դէմս Ցարութեան Քրիստոսի եւ երեւման աշակերտացն»։

Դ. — Ճաշու, այսինքն՝ ցերեկուան կերակուրի առեն եղած ժամերգութիւն որ համաչափօրէն երեք ժամերու կամ մասերու բաժնուած է. 3րդ, 6րդ եւ 9րդ ժամերուն կատարուելու պայմանով։

—1. «Կարգաւորութիւն հասարակաց Աղօթից Երրորդ ժամուն, որ կատարի ի դէմս Հոգւոյն Սրբոյ։ Եւ ի դէմս Նախամօրն ճաշակման եւ ազատութեան Քրիստոսին»։

—2. «Կարգաւորութիւն հասարակաց Աղօթից վեցերորդ ժամուն, որ կատարի ի դէմս Հօր Աստուծոյ։ Այլեւ ի դէմս չարչարանաց եւ խաչելութեան Որդւոյն Աստուծոյ։ Այլեւ մահուանն եւ բանական հոգւոյն աւանդմանն»։

Ե. — Երեկոյեան, արեւու մարը մտած առեն, որ «Խոնարհեցո, Ապրեցո»էն մինչեւ «Ի կարգալ» կ'տեւէ։

ժամագիրքի համաձայն,

«Կարգաւորութիւն հասարակաց Աղօթից Երեկոյի ժամուն, որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ, որ էջ ի խաչէն եւ պատեալ պատանակալաւ եդաւ ի գերեզմանի»։

Զ. — Խաղաղական, որ «Ի կարգալ»էն կ'սկսի մինչեւ «Եկեսցէ» կ'տեւէ։

Ժամագիրքի մէջ.

«Կարգաւորութիւն հասարակաց աղօթից խաղաղականի ժամուն, որ կատարի ի դէմս Հոգւոյն Աստուծոյ։ Այլեւ ի դէմս Բանին Աստուծոյ որ եդաւ ի Գերեզմանի եւ էջ ի դժոխս եւ խաղաղութիւն արար հոգւոյն»։

Է. — Հանգստեան, վերջին պահն աղօթից. քնանալէ առաջ։

Ըստ Ժամագիրքի.

«Կարգաւորութիւն հասարակաց Աղօթից հանգստեան ժամուն, որ կատարի ի դէմս Հօր Աստուծոյ, զի պահպանողական աջով Միածնին պահեսցէ զմեզ ի խաւարային գիշերիս»։

Այս եօթը բաժանումները սովորութիւն եղած է ամփոփել եւ կրճատել։

Այսպէս՝ Գիշերապաշտօնն ու Առաւօտեանը միացուած են, Արեւագալը ամփոփուած է Մեծպաքէն դուրս պաքի օրերուն, Ճաշու երեք մասերը միացած ու ամփոփուած են, եւ շատ տեղ ալ չըլլար։ Երեկոյեանն հաստատուն է ամէն տեղ. Խաղաղականն ու Հանգստեանը շատ տեղ չեն կատարուիր բացի Մեծպաքէն։

Միայն Մեծպաքին վերոյիշեալ եօթը բաժանումներուն պաշտամունքը երեքի վերածուելով լման կը կատարուին։

Վանքերու եւ անապատներու մէջ մանաւանդ Մեծպաքի կարգաւորութեամբ ժամերգութիւնը կ'կատարուի ընդհանրապէս։

Աւելորդ չէ՛ յիշել թէ հաւատացեալներուն կ՚ազդարարուէր ժամերգութեան սկիզբները եօթը բաժանումներու համեմատ կանոնաւոր կոչնականութեամբ կամ ժամհարութեամբ ։ Ամէն բաժանում «Հայր մեր»ով կ՚սկսի եւ այս միջոցին կ՚զարնուի կոչնակ, ժամհար, զանգակ եւլն. ինչ որ է ազդարար գործին ։ Բայց ցաւալի է որ այս կարգապահութիւնն ալ խախտած է, եւ այժմ բաւական կ՚համարուի ժամերգութեան սկսուածը, Առաւօտեանը, Ճաշունը կամ Պատարագի եւ Երեկոյեան ժամերգութիւնը ազդարարել ։ Անկէ զատ այս կոչնականութիւններն ալ ճիշդ ժամանակին չեն ըլլար ։



# ԿԱՐԳ ԺԱՄԱՍԱՑՈՒԹԵԱՆ

Եկեղեցւոյ պաշտամունքը կատարելու համար պաշտօնէից փոխն ի փոխ մասնակցումը՝ սկիզբէն ի վեր ընդունուած օրէնք մըն է ։

Բայց պաշտամունքը կազմող տարրերք ա՛յնքան ճոխ են որ, նախնիք մտադրութիւն ըրած են ամէն բան ճշդելու ։ Ասոր հետեւանքով իրարմէ քիչ շատ տարբեր ցուցակներ, լաւ եւս «խրատ»ներ պատրաստած են նշանաւոր վարդապետներ. ինչպէս Թովմաս Մեծոփեցի, Գրիգոր Խլաթեցի ։

Այս «խրատ»ներուն ամենէն ընդարձակն ու կատարեալն է Շնորհալի Ս. Հայրապետին պատրաստածը, որ հրատարակուած ալ է, ա՛յն Ատենի Ժամագիրքին վերջերը (էջ 456–466), որ Զաքարիա պատրիարքի օրով լոյս տեսաւ (տե՛ս գործիս Յառաջաբանը էջ Ա.) ։

Այդ խրատը սա խորագիրն ունի. «Կարգաւորութիւնք Եկեղեցւոյ եւ արարողութիւնք ժամատեղեաց, Տեառն Ներսեսի Հայոց Կաթողիկոսի, որ ետ բերել ի սուրբ եւ ի հռչակաւոր աստուածաբնակ եւ հրեշտակակրօն սուրբ հարցն մեծ ուխտին Մաքենեաց ։ Եւ ամենայնիւ ամենայն կամօք հաճեալ եւ հաւանեալ զպակասն ելից եւ զսխալանսն ուղղեաց. եւ կարգեաց ամենայն Հայ. եկեղեցեաց անջրելի հաստատուն աւանդ ։ Առաջնորդութեամբ Հոգւոյն Աստուծոյ, որ յաջողէ զամենայն բարի» ։

*Շատ հաւանական է որ այս խորագիրը ետքէն ճոխացած ըլլայ : Ինչպէս Շնորհալիին չեն այս տողերը :*

*Այս խրատները գրեթէ ճշդութեամբ եւ աւանդական ունակութեամբ կը պահուին եկեղեցւոյ մէջ: Ս. Էջմիածնի տպարանէն հրատարակուած* (1862) *Տօնացոյցի մը հրահանգին համեմատ, աւելի ամփոփ ու ճիշդ խրատ մը կը տրուի Ս. Էջմիածնի Օրացոյցներուն վերջը :*

*Այս խրատն կամ «Կարգ ժամասացութեան»ն է որ այս տեղ պիտի աւելցնենք մեր խոստումը կատարելու համար* (*էջ* 26) :

*Եւ կը յուսանք որ, ա՛յն տեղեր ուր ժամասացութեան կարգն ու կանոնը խանգարուած է, այս տեղ դրուած խրատին համեմատ կը բարեկարգուի կարելի եղածին չափ :*

## Ա· — ԳԻՇԵՐԱՅԻՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

**Աւագ Երիցու դաս.** — *Հայր մեր. Տէր եթէ զշրթունս.- Օրհնեալ համագոյ :*

**Աշակերտի դաս.** — *Տէ՛ր զի բազում.* (*ի հանգիստաւոր աւուրս յԱտեան ասի միաբան ձայնիւ*) :

**Աւագ.** — *Փառք հօր. Ցնծասցուք. Զարթիք :*

**Աշկրտ.** — *Զարթուցեալքս :*

**Աւագ.** — *Աշխարհ ամենայն. Առաւօտ լուսոյ. Զքէն Գոհանամք. Կանոնագլուխք. Հանգստեան Շարականք. Սաղմոս. Աւետարան. Այսօր անճառ. Աստուած անեղ. Նորոգող :*

**Աշկրտ.** — *Երգ՝ Արարիչ. Վասն ի վերուստ. Վասն ի գիշերի. Վասն ուղղելոյ. Վասն գտանելոյ :*

**Աւագ.** — *Տէ՛ր տունջեան. Ի գիշերի եւ ի տունջեան. Տէ՛ր երկնի եւ երկրի. Գոհանամք զքէն. Թա-*

գաւոր յաւիտեան. Ալէլուք. Սկսուածք Հետեւակ Շարականաց ։

**Աշկրտ.** — *Սկսուածք Օրհնութեան Շարականաց ։*

## Բ· ԱՌԱՒՕՏԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

**Աշկրտ.** — *Օրհնեալ ես Տէր Աստուած Փոխի եւ Հարցի Շարականաց սկսուածք. Եկեալքս ամենեքեան ։*

**Աւագ.** — *Մեծացուսցէ Փոխի եւ Մեծացուսցէ Շարականի սկսուածք. Ս. Աստուածածին. Ընկալ Տէ՛ր. Դո՛ւ ես թագաւոր. Եղիցի անուն Տեառն ։*

**Աշկրտ.** — *Վասն Սուրբ Տեղւոյս. Արի Տէր.*

**Աւագ.** — *Արի եւ մի՛ մերժեր ։*

**Աշկրտ.** — *Թագաւորեսցէ ։*

**Աւագ.** — *Աւետարան. Ամենակեցոյց ։*

**Աշկրտ.** — *Զուարճացեալքս ։*

**Աւագ.** — *Ողորմեա Փոխի եւ Ողորմեա Շարականի սկըսուածք ։ Երկպագեմք քարոզ ։*

**Աշկրտ.** — *Օրհնեցէք զՏէր Փոխի եւ Տէր յերկնից Շարականի սկսուածք. Փառք ի բարձունս ։*

**Աւագ.** — *Եւ յամենայն ժամ. Զյարութիւն Փրկչին ։*

**Աշկրտ.** — *Ասասցուք ամենեքեան · կամ Աստուած մեծ. կամ Առաջնորդ եղեն. կամ Զճգնութիւն. կամ Մայր Սուրբ. կամ Փառաւորեսցուք ։*

**Աւագ.** — *Գոհանամք զքէն. Սուրբ Աստուած. Վասն լսելի. Գիրք. Սաղմոս Եղիցի անուն Տեառն Օրհնեալ ։*

**Աշկրտ.** — *Աւետարան ։*

**Աւագ.** — *Նորաստեղծեալ կամ Արարչական, Տուր մեզ Տէ՛ր ։*

**Աշկրտ.** — *Խնդրեսցուք Հաւատով ։*

**Աւագ.** — *Կեցո՛ Տէր ։*

Աշկրտ. — Քում ամենազօր կամ Թագաւոր խաղաղու-թեան կամ Առ դրան Սուրբ Տաճարիս :

Աւագ. Մանկունք Փոխի եւ Մանկունք Շարականի սկսուածք. Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի. Սիրեցի զի լուիցէ. կամ Բանից իմոց Փոխերի սկսուածք :

Աշկրտ. — Սուրբ ես Տէ՛ր :

Աշկրտ. — Սուրբ ճգնաւորօք :

Աւագ. — Որ ընտրեցեր կամ Պսակիչ :

Աշկրտ. — Աղաչեսցուք զամենակալն :

Աւագ. — Օգնեա՛ մեզ :

Աշկրտ. — Տէ՛ր ամենակալ. Եկեալքս ի խոստովանութիւն։

Աւագ. — Տէ՛ր Աստուած փրկութեան մերոյ :

## Գ. ԱՐԵՒԱԳԱԼԻ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

Աշկրտ. — Եղիցի անուն Տեառն :

Աւագ. — Ցարեւելից երգի սկսուածք. Ցարեւելից քարոզ :

Աշկրտ. — Ցարեւելից աղօթք :

Աւագ. — Աղաղակեցէք Փոխի սկսուածք. Ճգնաւորք երգի սկսուածք. Ս. Ճգնաւորօք. Սուրբ ես Տէր :

Աշկրտ. — Աստուած Աստուած իմ փոխի սկսուածք. Լոյս արարիչ երգի սկսուածք. Անեղանելի սկսուածք. Փառաւորեցաք. Զառաւօտու աղօթս :

Աւագ. — Տէ՛ր Հովուեսցէ Փոխի սկսուածք. Ճանապարհ երգի սկսուած. Աղաչեսցուք զամենակալն. Առաջնորդ կենաց կամ Օրհնեալ ես Տէր :

## Դ. ՃԱՇՈՒ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

Աշկրտ. — Ողորմեա՛ ինձ Աստուած.

Աւագ. — Օրհնեմք զքեզ հայր անսկիզբն։

Աշկրտ. — Յամենայն ժամու աղաչանք եմ։

Աւագ. — Միաբան ամենեքեան։

Աշկրտ. — Որ ի Քերովբէական. Տէր Աստուած օրհնեալ օրհնեալ. Խնդրեսցուք։

Աւագ. — Առաջնորդեա՛։

Աշկրտ. — Տէ՛ր հովուեսցէ Փոխի սկսուածք։

Աւագ. — Քարոզ Գոհաբանելով։

Աշկրտ. — Խաղաղութեամբ քով. Բ. Ողորմեա Փոխի սկսուածք. Խաւարեցաւ. Յամենայն ժամու աղաչանք. Արթուն մտօք։

Աւագ. — Զգեցո՛ մեզ Տէր Աստուած. Տէր մի՛ յիշեր. Վասն հիւանդաց։

Աշկրտ. — Փառատեա՛. Երանի որ խորհի Փոխի սկսածք. Խնդրեսցուք հաւատով։

Աւագ. — Հայր գթութեանց. Գ. Ողորմեա Փոխի ըսկսուածք. Զարչարակցեալ։

Աշկրտ. Յամենայն ժամու աղաչանք իմ։

Աւագ. — Սուրբ սրտիւ. Երգ՝ Նահապետին։

Աշկրտ. — Տէ՛ր զօրութեանց, Տէր մի՛ մատներ. Աղաչեսցուք. Սիրեցի Փոխի սկսուածք.

Աւագ. — Անկեալ առաջի քո. Շարական հանգստեան (յաւուրս ուտեաց)։

Աշկրտ. — Ժամամուտ։

Աւագ. — Ճաշու փոխ. Շարական։

Աշկրտ. — Գիրք (յաւուրս ուտեաց)։

Աւագ. — Աւետարան. Հաւատամք։

Աշկրտ. — Եւ ես հաւատով։

Աւագ. — Տէր մեր եւ Փրկիչ։

## Ե. ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

Աւագ . *Խոնարհեցո Փոխի սկսուածք ։*

Աշկրտ . — *Ապրեցո՛ Փոխի սկսուածք ։ Լոյս Զուարթ ։*

Աւագ . — *Եկեալքս ի մտանել արեգական ։*

Աշկրտ . — *Հասեալքս ի ժամ երեկոյիս , Քարոզ . Հասեալքս . Հասեալքս ի ժամ երեկոյիս՝ Աղօթք ։*

Աւագ . — *Մեսեդիքի սկսուածք . Ուղիղ եղիցին ։*

Աշկրտ . — *Ասասցուք կամ Աղաչեսցուք կամ Մայր Սուրբ։*

Աւագ . — *Լուր ձայնից . Ս. Աստուած . Վասն լսելի լինելոյ . Համբարձի փոխի եւ Տարականի սկսուածք։*

Աւագ . — *Վասն խաղաղութեան ։*

Աշկրտ . — *Հայր գթած . Որ բնակեալն կամ Աստ օրհնեցէք . Զբարձրեալն զՔրիստոս . Եւ մեք միաբան ։*

Աւագ . — *Ցոյս կենաց ։*

Աշկրտ . — *Ցիշեա՛ Տէր զպաշտօնեայս , Խնդրեսցուք կամ Ս. Խաչիւ կամ Ս. Եկեղեցեաւս ։*

Աւագ . — *Քում ամենազօր , կամ Թագաւոր խաղաղութեան , կամ Պահպանեա , կամ ի մէջ Ս. Տաճարիս ։*

Աւագ . — *Գիրք . Աւետարան ։*

Աշկրտ . — *Ամբիծքի հանգստեան Տարական . Սաղմոսն եւ Աւետարան ։*

Աւագ . — *Տարական Աստուածածնի . Խաչի , Սաղմոս եւ Աւետարան . եւ Նախատօնակի Տարականաց սկսուածք ։*

## Զ. ԽԱՂԱՂԱԿԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

Աւագ . — *Ի կարդալ իմում Փոխի սկսուածք . Շնորհեա մեզ Տէր ։*

Աշկրտ. — *Գոհացարուք. Տէ՛ր Բարերար ։*
Աւագ. — *Նայեաց սիրով ։*
Աշկրտ. — *Աղաչեսցուք ։*
Աւագ. — *Շնորհատու բարեաց ։*
Աշկրտ. — *Երանեալ են անբիծք. Բաժին եւ Արարի ի-րաւունս Փոխի սկսուածք. Ի քէն հայցեմք. Ատ. Շարական Երկնաւոր հօտ ընտրեալ. Վասն հան-գուցեալ. Քրիստոս Որդի ։*

## Է. ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ

Աւագ. — *Առաքեա Տէր զլոյս քո ։*
Աշկրտ. — *Եկեսցէ Փոխի սկսուածք. Աղաչեսցուք՝ Քա-րոզ ։*
Աւագ. — *Տէր Աստուած. Խաղաղութեամբ յայս. Աւե-տարան ։*
Աշկրտ. — *Ընկալ քաղցրութեամբ կամ Աստուած յաւի-տենական կամ Որդի Աստուծոյ ։*
Աւագ. — *Հաւատով խոստովանիմքի սկսուածք ։*
Աշկրտ. — *Ա. զԱստուածածինն ։*
Աւագ. — *Ընկալ Տէր, Փառք քեզ Տէր Աստուած մեր*[1]։



---

[1] *Թէ սկսուածք եւ Թէ արձակման «Հայր մեր» աղօթքն, նոյնպէս եւ Մաղթանքն վերաբերին երիցագոյն Քահանային կամ Ժամօրհնողին ։*

## ՓՈՔՐԻԿ ՅԱՒԵԼՈՒԱԾ ՄԸ

# ԾՌԱԶԱՏԻԿ

*Զատկի վրայ տոմարագիտական ծանօթութիւն մը աւելցնելու համար, աւելորդ չենք համարիր այս Յաւելուածով Ծռազատկի խնդիրը բացատրել։*

*Երբ Հայերը եւ Յոյները Զատիկը միեւնոյն Կիրակին չեն տօներ, կ՚ըսուի Ծուռ Զատիկ կամ Ծռազատիկ։*

*Ծռազատիկը՝ Հինգհարիւրամեակի, այսինքն՝ 532 տարիներու շրջանին մէջ չորս անգամ միայն կը պատահի, այն ալ ա՛յդ շրջանի մէկ մասին մէջ միայն եւ իրարմէ 95 տարի հեռաւորութեամբ։*

*Մեր դրած հինգհարիւրամեակի մէջ պիտի պատահի սա թուականներուն։*

Ա. 2071*ին*+95=Բ. 2166*ին*+95=Գ. 2261*ին*+95=Դ. 2356*ին*։

*Դիտելու արժանի է որ՝ ա՛յն տարիներուն միայն կը պատահի ԾՌԱԶԱՏԻԿԸ, որոնց տարեգիրը (Ծ) կ՚ըլլայ, եօթներեակը՝ (Գ) եւ վերադիրը (Թ)։ — Տոմարագիտութեան մէջ եօթներեակը շաբթուան օրերը ցուցնող գիրն է. իսկ վերադիրը՝ լուսնին օրերը ցուցնող։*

*Արդ՝ երբ վերադիրը (Թ), եօթներեակը (Գ) եւ տարեգիրը (Ծ), քով քովի գան, այդ տարին՝ զատկական լուսնի ծնունդը Մարտ 24ին կ՚ըլլայ, իսկ լուսնի Աւագ լրումը Ապրիլ 6ին՝ Կիրակի օրը։ Եւ որովհետեւ Զատիկը լուսնի Աւագ լրման յաջորդող Կիրակին պէտք է ըլլայ,*

Ապրիլ 6ին վրայ շաբաթ մը (7 օր) աւելցնելով՝ կ'ունենանք Ապրիլ 13։ Մենք՝ Հայերս՝ այսպէս կը հաշուենք։

Իսկ Յոյները այդպէս չեն հաշուեր։ Երբ մեր վերադիրը (Թ) է, այսինքն՝ 9, Յունացը 10 է. այսպէս զատկական լուսնի ծնունդը Մարտ 23ին կ'ըլլայ, իսկ լուսնի Աւագ լրումը՝ Ապրիլ 5ին՝ շաբաթ օրը։ Հետեւաբար անմիջապէս յաջորդ կիրակի օրը՝ Ապրիլ 6ին՝ Զատիկ կ'ընեն. հետեւաբար լուսնի Աւագ լրումին յաջորդող կիրակին Զատիկ ըրած կ'ըլլան։

Հինգհարիւրամեակի ցանկին մէջ (էջ 35–36) Զատկի ծռութիւնը, այսինքն՝ Հայոց և Յունաց Զատկի տարբերութիւնը վերցնելու համար նոր գրով գրուած Շ տարեգիրները Հի փոխելու է։ 1824ին, որ Ծռազատկի տարի մ'էր, համախոհութեամբ Շ տարեգրի տեղ Հ տարեգիրը գործածուեցաւ։ Երուսաղէմի Նորատիպ Տօնացոյցին մէջ ալ վերոյիշեալ 4 տարիներուն Շ տարեգրերը Հի փոխուած են։ Մենք չփոխեցինք և ճիշդը գրինք նոր գրերով, բայց պատճառը այստեղ հասկնալէ ետքը մեր ցուցակին մէջ ալ յիշեալ տարիներուն Շ տարեգիրները Հի փոխելու է։



# ՆԻՒԹԵՐՈՒ ՑԱՆԿԸ

Էջ



ՏՕՆԱԿԱՆ ՄԵԾ ՕՐԵՐ

## ՎՐԻՊԱԿ

*49 էջին 28րդ տողին մէջ Բերդենեանեն բառը պէտք է կարդալ Բերանիայեն ։*



ԹԱԹԳԷՆ ՎԱՐԴ. ԻՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ԳՈՐԾԵՐԸ

---

# ՄԻԻՆԱՃԱԹ

## (Տուա Քիթապը)

*Ժամագիրք, Սաղմոս, Շարական, Ազաթանգեղոս, Նարեկ վէ սայիր էսէրլէրտէն սէչիլմիշ վէ թէվպիք օլունմուշ տուալար.*

## ԱՂՕԹԱԳԻՐՔ

**Յատկապէս պատրաստուած Թրքերէն խօսող Հայոց համար**

Տպագր. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ, 1899

Կեդրոնատեղին

*Այնթապայ՝ Վարդանեան Կրթարան*

Գին 5 Ղրշ.

ՄԷՃԻՏԸ 20 ՂՐՈՒՇԻՆ

ԳԻՆ 3 ՂՐՇ.

معارف نظارت جليله سنك ٩ محرم ٣١٩ و ١٥ نيسان ٣١٧
تاريخلى و ٦٦ نومرولى رخصتنامه سيله طبع اولنمشدر

